

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

2·1981

# *Մեր հեղինակներին*

*«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ:*

*Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով:*

*Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված՝ նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը: Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը: Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները:*

*Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից:*

*Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը:*

*Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի: Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում:*

*Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում:*


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**2**

ՓԵՏՐՎԱՐ, 1981

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.

ИЗДАЕТСЯ С 1922 Г.

**Выходит один раз в месяц на армянском языке**

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«ЛЕНИНЯН УГИОВ»** («По ленинскому пути») — **теоретический и политический журнал ЦК КП Армении**


## Բ Ո Վ Ա Ն Դ Ա Կ Ո Ւ Թ Յ Ո Ւ Ն




**ԵՐԵՎԱՆ ✦ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ**

С О Д Е Р Ж А Н И Е





# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՄԱՍԻՆ

1981 թվականի հունվարի 22—24-ը տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության XXVII համագումարը:

Համագումարը լսեց Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը, որով հանդես եկավ ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԸ:

Համագումարը լսեց նաև Հայաստանի կոմկուսի վերստուգիչ հանձնաժողովի հաշվետվությունը (զեկուցող՝ հանձնաժողովի նախագահ ընկ. Գ. Ս. ՓԱՀԼԵՎԱՆՅԱՆ):

Այնուհետև ծավալվեց մտքերի փոխանակություն Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հաշվետվության և Հայաստանի կոմկուսի վերստուգիչ հանձնաժողովի հաշվետվության շուրջ:

ՀԿԿ համագումարի քննարկմանն էր դրված նաև Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXVI համագումարին ներկայացվող «ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունները» ՍՄԿԿ Կենտկոմի նախագծի մասին զեկուցումը, որով հանդես եկավ Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահ ընկ. Ֆ. Տ. ՍԱՐԳՍՅԱՆԸ:

Զեկուցման շուրջը ծավալվեց մտքերի փոխանակություն:

Զեկուցման վերաբերյալ համագումարն ընդունեց բանաձև, միահամուռ հավանություն տալով ՍՄԿԿ Կենտկոմի ՍՄԿԿ Կենտկոմի նախագծի մասին փաստաթղթին:

Համագումարը միաձայն ընտրեց Հայաստանի կոմկուսի ղեկավար օրգաններ՝ Կենտրոնական կոմիտե, վերստուգիչ հանձնաժողով: Ընտրվեցին Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXVI համագումարի պատգամավորներ:

Հայաստանի կոմկուսի XXVII համագումարի պատգամավորները հսկայական ոգևորությամբ ընդունեցին ողջույնի նամակ՝ Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեին, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևին:

Եզրափակման ճառով համագումարում հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԸ:

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1981 թվականի հունվարի 24-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմկուսի XXVII համագումարում ընտրված Կենտրոնական կոմիտեի պլենումը:

Պլենումը Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընտրեց ընկ. Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻՆ:

Պլենումը Հայաստանի կոմկուսի Կենտկոմի երկրորդ քարտուղար ընտրեց ընկ. Գ. Ն. ԱՆԴՐԵԵՎԻՆ:

Պլենումը Հայաստանի կոմկուսի Կենտկոմի քարտուղարներ ընտրեց ընկ. ընկ. Հ. Մ. ՌՍԿԱՆՅԱՆԻՆ, Վ. Բ. ՂԱԼՈՒՄՅԱՆԻՆ, Կ. Լ. ԴԱԼԼԱՔՅԱՆԻՆ, Կ. Հ. ՂԱՄԲԱՐՅԱՆԻՆ:

Պլենումը Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի անդամներ ընտրեց ընկ. ընկ. Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻՆ, Գ. Ն. ԱՆԴՐԵԵՎԻՆ, Կ. Լ. ԴԱԼԼԱՔՅԱ-
ՆԻՆ, Վ. Բ. ՂԱԼՈՒՄՅԱՆԻՆ, Կ. Հ. ՂԱՄԲԱՐՅԱՆԻՆ, Լ. Ն. ՆԵՐՍԻՍՅԱ-
ՆԻՆ, Լ. Ս. ԾՈՒՍՏԿՈՅԻՆ, Հ. Մ. ՌՍԿԱՆՅԱՆԻՆ, Ս. Մ. ՊԵՏՐՈՍՅԱՆԻՆ,
Ֆ. Տ. ՍԱՐԳՍՅԱՆԻՆ, Բ. Ե. ՍԱՐԿԻՍՈՎԻՆ:

Պլենումը Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի անդամության թեկնածուներ ընտրեց ընկ. ընկ. Մ. Բ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆԻՆ, Դ. Ա. ՀԱՐՈՒ-
ԹՅՈՒՆՅԱՆԻՆ, Գ. Ա. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆԻՆ, Մ. Հ. ՄՈՒՐԱԴՅԱՆԻՆ, Մ. Ա.
ՅՈՒԶԲԱՇՅԱՆԻՆ, Լ. Գ. ՍԱՀԱԿՅԱՆԻՆ, Վ. Ա. ՏՈՒՐՅԱՆԻՆ:

Պլենումը Հայաստանի կոմկուսի Կենտկոմին առընթեր կուսակցական հանձնաժողովի նախագահ հաստատեց ընկ. Ս. Մ. ԽԱՉԱՏՐՅԱՆԻՆ:

Պլենումը հաստատեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բաժինների վա-
րիչներ:

Կենտկոմի կազմակերպական-կուսակցական աշխատանքի բաժնի վարիչ
հաստատվեց ընկ. Մ. Բ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆԸ, պրոպագանդայի և ագիտացիայի
բաժնի վարիչ՝ ընկ. Ա. Ա. ՄԿՐՏՉՅԱՆԸ, գիտության և ուսումնական հաստա-
տությունների բաժնի վարիչ՝ ընկ. ՅՈւ. Ի. ԽԱՉԻԿՅԱՆԸ, կուլտուրայի բաժնի
վարիչ՝ ընկ. Ս. Ս. ԱՎԵՏԻՍՅԱՆԸ, արդյունաբերության բաժնի վարիչ՝ ընկ.
Ֆ. Գ. ՊԵՏՐՈՍՅԱՆԸ, բաժնի վարիչ՝ ընկ. Ռ. Լ. ՍՏԵՓԱՆՅԱՆԸ, թեթև և
սննդի արդյունաբերության բաժնի վարիչ՝ ընկ. Ա. Ա. ՊՅԱՏԿՈՎԱՆ, շինա-
րարության և քաղաքային տնտեսության բաժնի վարիչ՝ ընկ. Կ. Հ. ՂԱՄԲԱՐ-
ՅԱՆԸ, գյուղատնտեսության բաժնի վարիչ՝ ընկ. Հ. Գ. ՆԱՎԱՍԱՐԴՅԱՆԸ,
տրանսպորտի և կապի բաժնի վարիչ՝ ընկ. Մ. Ս. ՄԻՆԱՍԲԵԿՅԱՆԸ, առևտրի,
պլանային և ֆինանսական մարմինների բաժնի վարիչ՝ ընկ. Հ. Ս. ԻԿԻԼԻԿ-
ՅԱՆԸ, վարչական մարմինների բաժնի վարիչ՝ ընկ. Մ. Մ. ԴԱՎԹՅԱՆԸ,
ինֆորմացիայի և արտասահմանյան կապերի բաժնի վարիչ՝ ընկ. Լ. Պ. ՄԱ-



ՆԱՍԵՐՅԱՆԸ, ընդհանուր բաժնի վարիչ՝ ընկ. Ս. Ա. ԾԵԿՈՅԱՆԸ: Կենտկոմի գործերի կառավարիչ հաստատվեց ընկ. Հ. Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆԸ:

Պլենումը «Սովետական Հայաստան» թերթի խմբագիր հաստատեց ընկ. Լ. Մ. ԿՐՈՅԱՆԻՆ, «Կոմունիստ» թերթի խմբագիր՝ ընկ. Բ. Մ. ՄԿՐՏՉՅԱՆԻՆ, «Ռյա թազա» թերթի խմբագիր՝ ընկ. Մ. Ա. ՄՍՏՈՅԱՆԻՆ, «Լենինյան ուղիով» ամսագրի գլխավոր խմբագիր՝ ընկ. Ա. Գ. ԱԴՈՅԱՆԻՆ, «Կուսակցական խոսք» ամսագրի խմբագիր՝ ընկ. Խ. Հ. ՀՈՎԱԿԻՄՅԱՆԻՆ:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումի աշխատանքին մասնակցում էին ՍՄԿԿ Կենտկոմի բաժնի վարիչի տեղակալ ընկ. Վ. Ն. ԻԳՆԱՏԵՆԿՈՆ, ՍՄԿԿ Կենտկոմի կազմակերպական-կուսակցական աշխատանքի բաժնի սեկտորի վարիչ ընկ. Վ. Ե. ՕԴԻՆՑՈՎԸ, ՍՄԿԿ Կենտկոմի պատասխանատու աշխատող ընկ. Ն. Պ. ԳՐՈՄԻԿՈՆ:

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ՎԵՐՍՏՈՒԳԻՉ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎՈՒՄ

Տեղի ունեցավ Հայաստանի կոմկուսի վերստուգիչ հանձնաժողովի նիստը:

Վերստուգիչ հանձնաժողովի նախագահ ընտրվեց ընկ. Ջ. Ա. ՋԱՆՈՅԱՆԸ, նախագահի տեղակալ՝ ընկ. Է. Թ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԸ:

---

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՀԱՇՎԵՏՎՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՌԱՋԻՆ ՔԱՐՏՈՒՂԱՐ ԸՆԿ. Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ 1981 ԹՎԱԿԱՆԻ ՀՈՒՆՎԱՐԻ 22-ԻՆ



*Ընկերնե՛ր։*

*Հայաստանի կոմունիստների բարձրագույն համաժողովը տեղի է ունենում կուսակցության և ժողովրդի կյանքի կարևորագույն իրադարձության՝ ՍՄԿԿ XXVI համագումարի նախաշեմին։*

*Հինգ տարի է մեզ բաժանում կուսակցության պատմական XXV համագումարից։*

*Դրանք ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների կենսագործման հինգ տարիներ էին, մեր երկրի հետագա համակողմանի առաջընթացի՝ նրա մշակած ծրագրի իրականացման համար կոմունիստների, սովետական ամբողջ ժողովրդի մղած անձնվեր պայքարի ու աշխատանքի հնգամյակ։*

*Դրանք սովետական պետության տնտեսական ու պաշտպանական պոտենցիալի անշեղ զորացման, սոցիալական սած ու կարևոր խնդիրների լուծման, գիտության և կուլտուրայի զարգացման, ժողովրդի բարեկեցության բարձրացման հինգ տարիներ էին։ Այդ ժամանակահատվածում լիովին հաստատվեց կուսակցության XXIV և XXV համագումարների մշակած տնտեսական ստրատեգիայի, ամբողջ հանրային արտադրության ինտենսիվացման կուրսի ճշտությունը։*

**) Տպագրվում է համառոտումներով։*



*Դրանք սովետական ժողովուրդների ինտերնացիոնալ անխախտ բարեկամության ու եղբայրության, մեր հասարակության գաղափարական, բարոյաքաղաքական միասնության հետագա ամրապնդման տարիներ էին։ Մեր հայրենիքի կենսագրության մեջ անմոռանալի ուղենիշ դարձավ նոր սահմանադրության ընդունումը, որը նոր աստիճան նշանավորեց սովետական հասարակության քաղաքական համակարգի, սոցիալիստական պետության և սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացման գործում։*

*Սովետների երկրի կյանքում նշանակալի իրադարձություն եղավ մեծ Հոկտեմբերի 60-ամյա հոբելյանի տոնակատարությունը։*

*Այդ տարիներին ավելի ամրապնդվեց Սովետական Միության միջազգային դրությունը, բարձրացավ նրա հեղինակությունը, ամրապնդվեցին սոցիալիզմի դիրքերը, եղբայրական սոցիալիստական երկրների բարեկամությունն ու համագործակցությունը։*

*Մեր կուսակցությունը հետևողականորեն իրականացնում է խաղաղության, ժողովուրդների ազատության և անկախության համար, միջազգային անվտանգության ու համագործակցության, համաշխարհային կոմունիստական ու բանվորական շարժման միասնության հետագա ամրապնդման համար մղվող պայքարի ծրագիրը։ Հաստատակամորեն կիրառելով խաղաղասիրական արտաքին քաղաքական կուրսը, կոմունիստական կուսակցությունը և սովետական պետությունը համառորեն պայքարում են խաղաղության ամրապնդման, միջազգային իրադրության առողջացման, զինաթափման համար, հանուն այն բանի, որ պատերազմները ընդմիշտ բացառվեն մարդկության կյանքից, թույլ չտրվի սպառազինությունների մրցավազքն ուժեղացնելու իմպերիալիստական ուժերի ագրեսիվ պլանների իրականացումը։*

*Այդ հինգ տարիները, ինչպես ՍՄԿԿ Կենտկոմի 1980 թվականի հոկտեմբերյան պլենումում ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը, արժանի տեղ կգրավեն կոմունիզմի ուղիով վստահորեն ընթացող սովետական ժողովրդի հերոսական գործերի պատմության մեջ։*

*Սովետական Հայաստանի համար ևս անցած հինգ տարիները եղել են պրոգրեսի, տնտեսական ու սոցիալական զարգացման, անշեղ վերելքի տարիներ։*

*Կենսագործելով կուսակցության XXV համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների և ՍՄԿԿ Կենտկոմի որոշումները, Հայաստանի կոմունիստական կուսակցությունը, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի ղեկավարությամբ, հանրապետության կոմունիստների, բոլոր աշխատավորների ջանքերը մոբիլիզացրել և նպատակամղել է անձնվիրաբար պայքարելու տասներորդ հնգամյակի տնտեսական ու սոցիալական զարգացման առաջադրանքները լրիվ կատարելու, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի, գիտության ու կուլտուրայի, ժողովրդական կրթության հետագա վերելքի համար։*

*Հանրապետության կուսակցական կազմակերպությանը միշտ մեծապես օգնել են ՍՄԿԿ Կենտկոմը, Կենտկոմի քաղբյուրոն և քարտուղարությունը։*

*Տասներորդ հնգամյա պլանի մշակման հիմքում դրվեց ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի «Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին»՝ մեր հանրապետության համար հիրավի պատմական նշանակության որոշումը։ Հնգամյակի տարիներին ընդունվեցին նաև «Հայկական ՍՍՀ-ում ոռոգելի հողագործության հետագա զարգացման և արդյունավետության բարձրացման միջոցառումների մասին», «Սևանա լճի բնական ռեսուրսների պահպանման և ռացիոնալ օգտագործման միջոցառումների մասին», Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի վերապրոֆիլավորման, Երևան քաղաքում մետրոպոլիտեն կառուցելու վերաբերյալ, «ՀՍՍՀ քաղաքներում մթնոլորտային օդի պահպանման միջոցառումների մասին» որոշումները։ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի այդ որոշումները, որ ուղղված են Սովետական Հայաստանի էկոնոմիկայի և կուլտու-*

բայի հետագա զարգացմանը, հանրապետության աշխատավորությանը ոգեշնչեցին նոր սխրանքների։

Թույլ տվեք, ընկեր պատգամավորնե՛ր, մեր համագումարի, հանրապետության կոմունիստների և բոլոր աշխատավորների անունից ՍՄԿԿ Կենտկոմին, Կենտկոմի քաղբյուրոյին, սովետական կառավարությանը, անձամբ Թանկագին ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևին ի սրտե և ջերմորեն շնորհակալություն հայտնել այդ օգնության համար, հայ ժողովրդի բարօրության, մեր հանրապետության զարգացման նկատմամբ ցուցաբերած հայրական հոգատարության համար։ (Ծափահարություններ)։

Հանրապետության կուսակցական կազմակերպության քաղաքական ու կազմակերպական նպատակասլաց գործունեությունը, հերոսական բանվոր դասակարգի, կոլտնտեսային պանծալի գյուղացիության, ժողովրդական մտավորականության, բոլոր աշխատավորների հայրենասիրական ոգեշունչ աշխատանքը հիանալի արդյունքներ տվեցին։ Հասարակական համախառն արտադրանքը աճեց 38,5 տոկոսով, արտադրված ազգային եկամուտը՝ 43 տոկոսով։ Տասներորդ հնգամյակը դարձավ մեծ նվաճումների հնգամյակ կենսագործունեության բոլոր ոլորտներում։ Համամիութենական սոցիալիստական մրցության մեջ հաղթելու համար Սովետական Հայաստանը չորս տարի անընդմեջ արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին։ Մեր հանրապետությունը հայրենիքին, կուսակցությանը զեկուցեց հնգամյա առաջադրանքը ժամկետից շուտ կատարելու մասին։ Այդ մեծ հաջողությունն արժանացավ մեր լենինյան կուսակցության Կենտրոնական կոմիտեի, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի բարձր գնահատականին։

Խոշոր, վառ իրադարձություններով էր հագեցած Սովետական Հայաստանի հասարակական-քաղաքական կյանքը հաշվետու ժամանակաշրջանում։ Ընդունվեց մեր հանրապետության նոր սահմանադրությունը։ Սովետական ժողովուրդների ինտերնացիոնալ բարեկամության և եղբայրության անմոռաց, հուզիչ հանդիսություն վերածվեց Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորման 150-ամյակի տոնակատարությունը։ Տնտեսական և կուլտուրական շինարարության ասպարեզում ձեռք բերած հաջողությունների համար և ի նշանավորումն այդ հոբելյանի, Սովետական Հայաստանը պարգևատրվեց Լենինի երրորդ շքանշանով։ (Ծափահարություններ)։

Հսկայական խանդավառությամբ ու ոգևորությամբ, հայրենասիրական ավյունով նշվեց Հայկական ՍՍՀ-ի և Հայաստանի կոմունիստական կուսակցության 60-ամյակը։

Հանրապետության կոմունիստները, աշխատավորները, ինչպես սովետական բոլոր մարդիկ, իրենց ողջ խոհերն ու ձգտումները, իրենց բոլոր նվաճումները մշտապես կապում են կոմունիստական կուսակցության հեղափոխական-վերակերտիչ գործունեության հետ, կուսակցություն, որ մեր հայրենիքը տանում է լենինյան ճիշտ կուրսով, պատվով կատարում բանվոր դասակարգի, երկրի բոլոր աշխատավորների, սովետական ամբողջ հասարակության քաղաքական առաջնորդի, իմաստուն ղեկավարի դերը։

Ժողովուրդն ու կուսակցությունը միասնական են։ Սովետական մարդիկ միահամուռ հավանություն են տալիս ՍՄԿԿ և սովետական պետության լենինյան ներքին և արտաքին քաղաքականությանը և ջերմորեն պաշտպանում այն, բարձր են գնահատում ՍՄԿԿ Կենտկոմի, Կենտկոմի քաղբյուրոյի, Լենինի մեծ գործի շարունակող, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևի կազմակերպչական ու քաղաքական վիթխարի գործունեությունը այդ քաղաքականության կենսագործման ասպարեզում։

Առաջիկա տասնամյակը նոր, խոշոր փուլ է նշանավորում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի անշեղ վերելքի գործում։

Այդ խնդիրների լուծման բնագավառում պատասխանատու ժամանակահատված կդառնա տասնմեկերորդ հնգամյակը, որն արդեն թևակոխել ենք։



Ինչպես նշված է Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXVI համագումարին ներկայացվող՝ «ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունները» ՍՄԿԿ Կենտկոմի նախագծում, տասնմեկերորդ հնգամյակի գլխավոր խնդիրն է ապահովել սովետական մարդկանց բարեկեցության հետագա աճը՝ ժողովրդական տնտեսության հաստատուն, վերընթաց զարգացման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման և էկոնոմիկան զարգացման ինտենսիվ ուղու վրա փոխադրելու, երկրի արտադրական պոտենցիալի ավելի ռացիոնալ օգտագործման, ռեսուրսների բոլոր տեսակների ըստ ամենայնի խնայողության և աշխատանքի որակի բարելավման հիման վրա։

Հանրապետության կոմունիստները, աշխատավորները, շահագրգռությամբ, գործարար քննարկելով ՍՄԿԿ Կենտկոմի նախագիծը, ջերմորեն հավանություն են տալիս այդ փաստաթղթին, նախատեսված պլանների իրականացումը համարում իրենց կենսական գործը, ուղղակի պարտքը։ Կոմունիստական շինարարության նոր հորիզոնները, առաջիկա գործերի վեհությունը, տասնմեկերորդ հնգամյակում ստեղծարար աշխատանքի հեռանկարները ոգեշնչում, ստեղծագործական նոր լիցք են հաղորդում սովետական մարդկանց աշխատանքային ակտիվությանը, սխրանքների կոչում՝ հանուն մեր հայրենիքի հետագա ծաղկման և հզորության ամրապնդման։

Թույլ տվեք, ընկերնե՛ր, շարադրել հաշվետու ժամանակաշրջանում Հայաստանի կոմկուսի Կենտկոմի գործունեության արդյունքները և հայտնել հանրապետության կուսկազմակերպության աշխատանքի հետագա բարելավման խնդիրների և ուղիների վերաբերյալ Կենտկոմի որոշ նկատառումներ, որոնք բխում են կուտակված դրական փորձի և մեր ձեռքբերումների քննադատական վերլուծությունից։

## I. ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ԱՆՇԵՂ ՎԵՐԵԼՔԻ, ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ԵՎ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՈՐԱԿԻ ՀԱՄԱԿՈՂՄԱՆԻ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ

Հաշվետու ժամանակաշրջանում հանրապետության կուսակցական կազմակերպության, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի գործունեությունը նպատակամղված է եղել կուսակցության տնտեսական ստրատեգիայի անշեղ կենսագործմանը։

Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեն հետևողականորեն իրականացրել է Հայաստանի կոմկուսի XXVI համագումարի որոշումները, որ ուղղված էին արդյունաբերության հետագա զարգացմանը, նրա կառուցվածքի բարելավմանը, կառավարման և տնտեսավարման մեթոդների կատարելագործմանը, նվազ նյութատար, նվազ էներգատար, աշխատատար արտադրությունների առավել արագ զարգացմանը, արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացմանը, ձեռնարկությունների վերակառուցմանն ու տեխնիկական վերազինմանը, արտադրության հետագա մասնագիտացմանն ու համակենտրոնացմանը, արտադրաուժերի ռացիոնալ տեղաբաշխմանը՝ հաշվի առնելով առկա հումքային և ազատ աշխատանքային ռեսուրսները, բնության պահպանության շահերը և հանրապետության ռեգիոնների տնտեսական համասեռության անհրաժեշտությունը։

Ներկայումս հանրապետության ազգային եկամտի մեջ արդյունաբերության տեսակարար կշիռը կազմում է 63,4 տոկոս, 1975 թվականի 59,4 տոկոսի փոխարեն։

Տասներորդ հնգամյակի տարիներին, իններորդ հնգամյակի համեմատությամբ, արդյունաբերական արտադրության զարգացմանը հատկացվել են 20 տոկոսով ավելի կապիտալ ներդրումներ: Արդյունաբերության հիմնական արտադրական ֆոնդերը աճեցին 1,5 անգամ: Դա նշանակում է, որ միայն վերջին հնգամյակում արդյունաբերության արտադրական պոտենցիալը մեծացավ նախորդ 55 տարիների ընթացքում ստեղծվածի կեսի չափով:

Բարձրացել է արդյունաբերական ձեռնարկությունների և կազմակերպությունների տեխնիկական հագեցվածությունը: Հիմնական ֆոնդերի կառուցվածքի մեջ կատարվել են պրոգրեսիվ փոփոխություններ:

Հնգամյակի տարիներին կառուցվեցին և շահագործման հանձնվեցին արդյունաբերական ավելի քան 70 նոր ձեռնարկություններ, խոշոր արտադրամասեր և արտադրություններ: Դրանց թվում են՝ «Հրազդանի մեքենաշինարար» արտադրական միավորումը, զուտ երկաթի փորձնական գործարանը, Ախթալայի պահածոների գործարանը, Աբովյան քաղաքի գարեջրի գործարանը, Կամո քաղաքի մսի կոմբինատը, Երևանի, Աբովյանի և Ղափանի երկաթբետոնե կոնստրուկցիաների գործարանները, Էջմիածնի խոշոր պանելային տնաշինական կոմբինատը, Սառնակունք գյուղի պանրագործարանը, Իջևանի գինու գործարանը, Ջարենցավանի կարի ֆաբրիկան, Երևանի, Լենինականի և Հոկտեմբերյանի հացի գործարանները, Ջարենցավանի «Բջնի» հանքային ջրերի գործարանը, Գորիսի և Ղափանի տրիկոտաժի ֆաբրիկաները: Նոր կարողություններ գործարկվեցին արդյունաբերության տարբեր ճյուղերի գործող շատ ձեռնարկություններում:

Նոր բնագիծ նվաճվեց էներգետիկ բազայի հետագա զարգացման ասպարեզում: Գործարկվեց Հայաստանի ատոմային էլեկտրակայանը՝ 815 հազար կիլովատ ընդհանուր կարողությամբ: Ատոմային էլեկտրակայանի արտադրած էլեկտրաէներգիայի տեսակարար կշիռն այժմ կազմում է հանրապետությունում արտադրվող ամբողջ էլեկտրաէներգիայի 35,7 տոկոսը: Գործարկվել է նաև Շամբի հիդրոէլեկտրակայանը՝ 170 հազար կիլովատ կարողությամբ:

Կենտրոնական կոմիտեն գոհունակությամբ է զեկուցում համագումարին, որ ժամկետից շուտ է կատարվել արդյունաբերության զարգացման 10-րդ հնգամյա պլանը: Արդյունաբերական արտադրության ծավալը ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղություններով Հայկական ՍՍՀ-ի համար նախատեսված 43—47 տոկոսի փոխարեն աճեց 46,2 տոկոսով:

Արդյունաբերության բոլոր հիմնական ճյուղերը զարգանում էին դինամիկ, բարձր ու կայուն տեմպերով: Այսպիսով, 70-ական թվականներին Սովետական Հայաստանի արդյունաբերությունը ավելի քան կրկնապատկեց թողարկվող արտադրանքի ծավալը:

Արդյունաբերական արտադրության ծավալների աճի և կարևորագույն արտադրատեսակների թողարկման տեմպերով հնգամյա առաջադրանքները ժամկետից շուտ կատարեցին Երևան, Լենինական, Կիրովական, Դիլիջան քաղաքների, Հրազդանի, Աբովյանի, Նաիրիի և հանրապետության մի շարք այլ շրջանների աշխատավորները, ռադիո և էլեկտրոնային արդյունաբերության, հաստոցաշինության, գունավոր մետալուրգիայի ձեռնարկությունները, թեթև, անտառային ու փայտամշակման, մսեղենի-կաթնեղենի, տեղական արդյունաբերության մինիստրությունները, հանրապետության ավելի քան 200 ձեռնարկություններ և միավորումներ:

Տարեկան պլաններից դուրս թողարկվել է ավելի քան 475 միլիոն ռուբլու արտադրանք, այդ թվում՝ ավելի քան 360 միլիոն ռուբլու ժողովրդական սպառման ապրանքներ:

Արդյունաբերական արտադրության ծավալների աճի ավելի քան 85 տոկոսն ստացվել է գործող ձեռնարկությունների ընդլայնման, վերակառուցման ու տեխնիկական վերազինման, կարողությունների օգտագործման բարելավման հաշվին:

Առավել արագ տեմպերով են զարգացել ժողովրդական տնտեսության մեջ



գիտատեխնիկական առաջընթացը որոշող նվազ նյութատար և նվազ էներգատար ճյուղերը: Դրանք են՝ էլեկտրոնային, ռադիոտեխնիկական, կապի միջոցների արդյունաբերությունը, ճշգրիտ հաստոցաշինությունը՝ թվային, ծրագրային կայանքների կիրառմամբ և այլն: Մեքենաշինության և մետաղամշակության ճյուղերում միասնական ցուցանիշով արտադրության ծավալը աճել է 74,5 տոկոսով: Արդյունաբերական արտադրության ընդհանուր ծավալում դրանց տեսակարար կշիռը ներկայումս 28 տոկոս է:

Դրա հետ մեկտեղ քիմիայի և գունավոր մետալուրգիայի ճյուղերի տեսակարար կշիռը կրճատվել է համապատասխանաբար 2 և 0,7 կետով, որ թելադրված էր բնության պահպանության և շրջակա միջավայրի առողջացման շահերով: Այդ միտումը կպահպանվի նաև 11-րդ հնգամյակում:

Հաշվետու ժամանակաշրջանը բնութագրվում է նաև ժողովրդական սպառման ապրանքներ թողարկող ճյուղերում կարողությունների զարգացմամբ ու արտադրության ավելացմամբ:

Այդ հարցերը մշտապես գտնվել են Կենտրոնական կոմիտեի ուշադրության կենտրոնում: Սպառման առարկաների արտադրությունը տասներորդ հնգամյակում ավելացավ 53 տոկոսով, որը գրեթե 7 կետով գերազանցում է հնգամյա առաջադրանքը:

Ամբողջությամբ վերցրած զգալի հաջողություններ են ձեռք բերել հանրապետության թեթև արդյունաբերության բնագավառի աշխատողները (մինիստր՝ ընկ. Ա. Գևորգյան): Ճյուղի աշխատավորական կոլեկտիվները ժամկետից շուտ կատարեցին տասներորդ հնգամյակի առաջադրանքները: Պլանով նախատեսված 37,4 տոկոսի փոխարեն թողարկվող արտադրանքի ծավալներն աճեցին 55,8 տոկոսով: Պետական որականիշով առարկաների քանակն ավելացավ 10 անգամ, իսկ արտադրանքի ընդհանուր ծավալում դրանց տեսակարար կշիռը հասավ 24,4 տոկոսի: Ճյուղում արտադրանքի նորացման տոկոսը հասել է 60-ի:

Տասներորդ հնգամյակում հետևողական աշխատանք է տարվել տերիտորիալ համամասնությունները կատարելագործելու և արտադրաուժերի տեղաբաշխումը բարելավելու, ազատ աշխատանքային ռեսուրսները ռացիոնալ օգտագործելու նպատակով:

Փոքր և միջին քաղաքներում ու բնակավայրերում կազմակերպվեցին արդյունաբերության տարբեր ճյուղերի ավելի քան 70 ձեռնարկություններ ու մասնաճյուղեր: Արդյունաբերական արտադրության ծավալի աճը այդ բնակավայրերում կազմեց 75 տոկոս, որը 2,4 անգամ բարձր է, քան հանրապետության խոշոր քաղաքներում: Դրա շնորհիվ փոքր և միջին քաղաքների ու բնակավայրերի տեսակարար կշիռը արդյունաբերական արտադրության ընդհանուր ծավալում բարձրացավ և հասավ 36 տոկոսի: Առավել զարգացան Հրազդանի, Ջարենցավանի, Ջրվեժի և արդյունաբերական այլ հանգույցներ:

Արդյունաբերական արտադրության զարգացման և արտադրաուժերի տեղաբաշխման նման կուրսը օբյեկտիվորեն ճիշտ է, և մենք պետք է այսուհետ ևս շարունակենք այն: Դա ունի նաև սոցիալական կարևոր նշանակություն, քանի որ նվազեցնում է միգրացիան հանրապետության ներսում, փոքր քաղաքների ու ավանների բնակչությանը հաղորդակից դարձնում տեխնիկապես հագեցված, բարձր կազմակերպված ինդուստրիալ աշխատանքին:

Բարձրացել է արդյունաբերական արտադրության համակենտրոնացման ու մասնագիտացման մակարդակը: 10-րդ հնգամյակում 2,4 անգամ ավելացավ միավորումների թիվը և հասավ 77-ի, որոնց բաժին է ընկնում թողարկվող արտադրանքի ծավալի ավելի քան 54 տոկոսը:

Բարելավվել է նոր տեխնիկայի, առաջավոր տեխնոլոգիայի մշակման ու ներդրման աշխատանքը: Հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ ներդրվեցին նոր տեխնիկայի մոտ 4 հազար կարևորագույն միջոցառումներ, այդ թվում 900-ը՝ արդյունաբերական արտադրանքի նոր տեսակների յուրացման, 460-ը՝ արտադրապրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման ուղղությամբ և այլն:

Հանրապետության կուսակցական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում է գտնվել թողարկվող արտադրանքի տեխնիկական մակար-

մեծապես պայմանավորված են նաև այն բանով, որ շրջանային կուսակցական կոմիտեներն ավելի հաստատակամորեն են իրականացնում կուսակցության ագրարային քաղաքականությունը, մշտապես կատարելագործելով գյուղում տարվող կազմակերպչական և քաղաքական աշխատանքը: Ուժեղացել է գյուղատնտեսությանը ցույց տրվող շեֆական օգնությունը:

Այդ ամենի համար, հայրենասիրական ոգեշունչ աշխատանքի համար, թույլ տվեք համագումարի անունից սրտագին ու խոր երախտագիտություն հայտնել գյուղի մեր բոլոր պանծալի աշխատավորներին: (Ծափահարություններ):

Սխալ կլիներ, սակայն, գյուղատնտեսության մեջ գոյություն ունեցող իրավիճակի գնահատմանը մոտենալ միակողմանիորեն, ոչ քննադատաբար, նշել միայն հաջողությունները, չնկատելով դեռևս գոյություն ունեցող ոչ քիչ թերությունների ու չօգտագործված ռեզերվները:

Գլխավոր թերությունն այն է, որ հանրապետության ընդհանուր դրական ցուցանիշների ետևում դեռևս քողարկվում են ետ մնացող շրջաններ, իսկ շրջանների ընդհանուր ցուցանիշների ետևում՝ բազմաթիվ ետ մնացող տնտեսություններ:

Գյուղատնտեսական մթերքների ծավալների արտադրության աճը մի շարք շրջաններում ակնհայտորեն չի համապատասխանում նրանց մեծ հնարավորություններին և հատկացված կապիտալ ներդրումներին: Մեծ թվով շրջաններ չեն կատարել գյուղատնտեսական մթերքների առանձին տեսակների արտադրության և պետությանը վաճառելու առաջադրանքները:

Հանրապետության շրջանների կեսից ավելին պետությանը վաճառած անասունների միջին քաշով և կաթնատվությամբ, իսկ շրջանների երկու երրորդը՝ հավերի միջին ձվատվությամբ, չեն հասել հանրապետական միջին ցուցանիշներին:

Այս ամենը վկայում է ինչպես լուրջ թերությունների առկայության, այնպես էլ չօգտագործված ռեզերվների մասին:

Օրինաչափ կլինի, եթե համագումարը խնդիր դնի տասնմեկերորդ հնգամյակում գյուղում ամբողջ աշխատանքի հետագա բարելավման, բոլոր հնարավորությունների ու ռեզերվների օգտագործման միջոցով հասնել այն բանին, որպեսզի գյուղատնտեսական մթերքների արտադրության ու մթերման պլաններն ամբողջովին կատարեն յուրաքանչյուր շրջան, յուրաքանչյուր տնտեսություն, բրիգադ ու ֆերմա, յուրաքանչյուր օղակ, գյուղի ամեն մի աշխատավոր:

Հանրապետության գյուղատնտեսական արտադրության արագընթաց զարգացումը պայմանավորված է նախ և առաջ հողային ու ջրային ռեսուրսների լրիվ, ռացիոնալ և արդյունավետ օգտագործմամբ:

Պետք է նշել, որ հաշվետու ժամանակաշրջանում այդ բնագավառում որոշակի աշխատանք է կատարվել: Այսպես, եթե 1950—1975 թվականներին հանրապետությունում վարելահողերի տարածությունը կրճատվել էր ավելի քան 75 հազար հեկտարով, ապա տասներորդ հնգամյակում հանրապետությունում վարելահողերի տարածությունն ավելացավ 5,5 հազար հեկտարով:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և հանրապետության կառավարությունը իրենց ուշադրության կենտրոնում են պահել հողերի մելիորացման, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի «Հայկական ՍՍՀ-ում ոռոգելի հողագործության հետագա զարգացման և նրա արդյունավետության բարձրացման միջոցառումների մասին» որոշման իրականացման հարցերը:

Ավելացել են մելիորատիվ աշխատանքների ծավալները, սկսվել և հաջողությամբ առաջ է ընթանում Ախուրյանի, Հալավարի, Սևաբերդի, Հախումի և Դավիթ-Բեկի ջրամբարների շինարարությունը: Մեծածավալ աշխատանքներ են կատարվել ոռոգման սիստեմների վերակառուցման ուղղությամբ: Զգալիորեն ամրապնդվել է «Հայգլխջրշինի» նյութատեխնիկական բազան:

Մյուս կողմից նոր ոռոգելի հողերի յուրացման և գործարկման, Արարատյան հարթավայրի աղուտների աղազերծման, գերխոնավ հողերի մելիորատիվ վիճակի բարելավման տեմպերը բացահայտորեն անբավարար են, դեռևս ցածր է կատարվող աշխատանքների որակը: Դանդաղ են ընթանում նաև գոյություն



ունեցող մելիորատիվ սիստեմների վերակառուցման և դրանց ջրապահովվածության բարելավման աշխատանքները:

Դեռևս խզում գոյություն ունի նոր հողատարածությունների գործարկման և դրանց տնտեսական կարգաբերման տեմպերի միջև:

Կուլտուր-տեխնիկական միջոցառումների նպատակով հանրապետությանը հատկացվող կապիտալ ներդրումները դեռևս յուրացվում են ոչ լրիվ և ցածր արդյունավետությամբ: Ջրատնտեսական օբյեկտների պլանավորման, նախագծման և կառուցման գործում եղած լուրջ վրիպումների ու սխալների հետևանքով՝ արդեն կառուցված ջրամբարներից ոռոգվելիք հողերի գյուղատնտեսական յուրացումն իրականացվում է մեծ հապաղումով:

Գյուղատնտեսության, ջրային տնտեսության մինիստրությունները, «Հայգլխջրշինը», «Գյուղտեխպետկոմը» և համապատասխան մյուս կազմակերպությունները պետք է արմատապես բարելավեն ջրամբարների շինարարության և դրանցից ոռոգվող հողերի յուրացման աշխատանքները հանրապետությունում:

Առաջնահերթ նշանակություն ունի ոռոգման ջրի օգտագործման արդյունավետության բարձրացումը: Անցած հնգամյակում մեկ հեկտարի ոռոգման համար միջին հաշվով ծախսվել է 11,5 հազար խորանարդ մետր ջուր, դա 30—40 տոկոսով գերազանցում է նորման, որի մեջ հաշվի են առնված նաև կորուստները: Դրա պատճառը հողային ջրանցքների հակաֆիլտրային պատյանի բացակայությունն է, ոռոգման սիստեմների և ներտնտեսական ցանցերի վատ վիճակը, տեխնիկական ցածր մակարդակը, ոռոգելի հողամասերի անհարթությունը, ջրման առաջավոր տեխնիկայի թույլ արմատավորումը: Կոլեկտորադրենաժային ցանցի բացակայության պատճառով հողերը ճահճանում և աղակալում են:

Գորիսի շրջանում Որոտանի սիստեմին ենթակա և ոռոգման ցանց ունեցող 6.258 հեկտար նոր գործարկված հողերից 1979 թվականին ոռոգվեց ընդամենը 3.432 հեկտար:

Տեղին է հարցնել շրջկոմի քարտուղարին և շրջգործկոմի նախագահին՝ ընկերներ Ա. Հարությունյանին և Ս. Գալստյանին, թե նրանք ինչպե՞ս են մտադիր բարձրացնել ոռոգելի հողերի արդյունավետությունը և ապահովել պետական կապիտալ ներդրումների փոխհատուցը:

Այլևս չի կարելի, ընկերնե՛ր, հաշտվել այն բանի հետ, երբ ոռոգելի հողերի ոչ քիչ մասը միանգամայն անարդյունավետ է օգտագործվում: 1979 թվականին, օրինակ, հանրապետության 102 տնտեսություններում հացահատիկային կուլտուրաների 9,8 հազար հեկտար ոռոգելի տարածության յուրաքանչյուր հեկտարից ստացվեց 15 ցենտներ բերք: Նույն տարում ոռոգելի հողերում սիլոսային կուլտուրաների բերքատվությունն ընդամենը 3 ցենտներով, իսկ միամյա խոտաբույսերինը 6 ցենտներով ավելի էր, քան չոռոգվող հողերում: Ավելին, վատ տնտեսավարման հետևանքով ամեն տարի ավելի քան 20 հազար հեկտար մշակելի վարելահող, այդ թվում 5,7 հազար հեկտար ոռոգելի հող չի օգտագործվում: Սա լուրջ խորհելու առիթ պետք է տա գյուղատնտեսության մինիստրության (ընկ. Հ. Թարջումանյան), մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրության (ընկ. Ռ. Շահոյան), «Գյուղտեխպետկոմի» (ընկ. Ս. Հովհաննիսյան) ընկերներին, համապատասխան շրջանային կուսակցական, սովետական և գյուղատնտեսական մարմինների ղեկավարներին:

Անտնտեսվարության նման փաստերը պետք է իսպառ վերացվեն:

Մեր խնդիրն է հողերի տեսքափոխության միջոցով հասնել գյուղատնտեսական հողատարածությունների և, առաջին հերթին, վարելահողի անընդհատ աճին, հաշվի առնելով հանրապետության յուրաքանչյուր գոտու, շրջանի և յուրաքանչյուր տնտեսության բնական ու տնտեսական պայմանները:

Հողային և ջրային ռեսուրսների լրիվ և ռացիոնալ օգտագործումը, հողերի բերրիության բարձրացումը կուսակցության շրջկոմների, ժողովրդական դեպուտատների շրջանային սովետների, գյուղատնտեսության մինիստրության, գյուղատնտեսական մյուս գերատեսչությունների և կազմակերպությունների առաջնահերթ գործն է, գյուղի բոլոր աշխատավորների գործը:

Տասներորդ հնգամյակում շարունակվում էր գյուղատնտեսության հետագա

ման, արտադրության բոլոր ռեզերվների հայտնաբերման և օգտագործման, գիտության, առաջավոր փորձի նվաճումների արմատավորման հիման վրա:

Այդ ուղղությամբ հանրապետությունում քիչ բան չի արվում: Կան գործի նկատմամբ խոր ու մտածված մոտեցման օրինակներ: Այդպես են վարվում Հրազդանի, Նաիրիի, Կրասնոսելսկի և մի շարք այլ շրջաններում, որոնք կայուն և բարձր ցուցանիշների են հասել անասնապահության բնագավառում և մշտապես բարելավում են դրանք:

Քիչ չեն նաև այն շրջանները, որոնք 9-րդ հնգամյակի համեմատությամբ շեշտակիորեն բարելավել են որակական ցուցանիշները: Ղուկասյանի շրջանում, օրինակ, հնգամյակի ընթացքում մեկ կովի միջին կաթնատվությունն ավելացավ 579 կիլոգրամով և հասավ 2.187 կիլոգրամի, մսի արտադրությունը գյուղատնտեսական հողատարածությունների 100 հեկտարի դիմաց կազմել է 62 ցենտներ, կաթինը՝ 307 ցենտներ:

Կան առանձին տնտեսություններ, որոնք հասել են անասնապահության մթերատվության է՛լ ավելի շեշտակի բարձրացման: Այսպես. Եղեգնաձորի շրջանի Աղավնաձոր սովխոզում (դիրեկտոր՝ ընկ. Վ. Մաթևոսյան, կուսկազմակերպության բյուրոյի քարտուղար՝ ընկ. Ն. Այվազյան) մեկ կովի կաթնատվությունը հնգամյակի տարիներին ավելացել է 1.500 կիլոգրամով և հասել 3.500 կիլոգրամի: Եվ դա՝ ոչ այնքան բարենպաստ կլիմայական գոտում:

Բայց գործերի վիճակը ամենուրեք չէ, որ այդպես է: Ղուկասյանի շրջանի հարևան Ամասիայի շրջանում (առաջին քարտուղար՝ ընկ. Ջ. Ալիև, շրջգործկոմի նախագահ՝ ընկ. Ն. Հակոբյան), որը գյուղատնտեսական ավելի շատ հողատարածություններ ու ռոգելի հողեր ունի, և որտեղ կլիմայական պայմաններն ավելի վատ չեն, այդ տարիներին մեկ կովի կաթնատվությունն ավելացավ 223 կիլոգրամով և կազմեց 1.501 կիլոգրամ: Գյուղատնտեսական հողատարածությունների 100 հեկտարի դիմաց մսի արտադրությունը կազմել է 44 ցենտներ, իսկ կաթինը՝ 200 ցենտներ:

Վիճակն ավելի բարվոք չէ նաև Թումանյանի, Ապարանի, Ազիզբեկովի և այլ շրջաններում:

Անհրաժեշտ է համագումարում կրկին ու կրկին շեշտել, որ կուսակցական կազմակերպությունների, կուսակցական կոմիտեների, սովետական և գյուղատնտեսական մարմինների անհետաձգելի խնդիրն է՝ արդյունավետ միջոցներ ձեռնարկել յուրաքանչյուր շրջանում և տնտեսությունում ստեղծելու կերի կայուն բազա, որը լիովին բավարարի ոչ միայն հանրային, այլև կոլտնտեսականների անձնական օժանդակ տնտեսություններում պահվող անասուններին, ինչպես նաև ստեղծելու կերի անհրաժեշտ փոխանցվող պաշարներ: Ըստ ամենայնի պետք է բարելավել կերի պահպանման գործը, արագացնել դրա պատրաստման առաջավոր մեթոդների արմատավորումը:

Հաշվետու ժամանակաշրջանում համակցված կերի արդյունաբերության զարգացման ասպարեզում քիչ բան չի արված: Միևնույն ժամանակ մթերումների մինիստրությունը և նրա ձեռնարկությունները չեն հասել թողարկվող արտադրանքի որակի շոշափելի բարելավման: Մինիստրության ղեկավարությունը (մինիստր՝ ընկ. Օ. Հովակիմյան) այս գործում մշտական խոստումներից այն կողմ չի անցնում: Մթերումների մինիստրությունը պետք է իրականացնի գործարանների հստակ մասնագիտացում, դրանցում կազմակերպի լիարժեք համակցված կերի արտադրությունը:

Խոշոր թերություններ կան տոհմաբուծության բնագավառում: Դրա բնորոշ ապացույցն է նաև այն, որ հանրապետությունում կաթի արտադրությամբ զբաղվող 692 կոլտնտեսություններից ու պետական տնտեսություններից 193-ում միջին կաթնատվությունը կազմում է 950-ից մինչև 1.650 կիլոգրամ:

Արմատական բարելավում է պահանջում նախրի վերարտադրության գործը:

Վերջին հնգամյակում հանրապետության կաթնատու նախիրն ամեն տարի պակասում էր ավելի քան 2.000 կովով: Հատկապես անհանգստացնող է կովերի ստերջության բարձր տոկոսը: Միայն այդ պատճառով տասներորդ հնգամյա-



կում կոլտնտեսություններն ու սովխոզները պակաս ստացան ավելի քան 180 հազար հորթ կամ 80 հազար կով և ավելի քան 30 հազար տոննա միս:

Անասնապահական մթերքների արտադրության ծավալների հետագա մեծացումը պահանջում է ավելացնել կովերի գլխաքանակը, դրանց տեսակարար կշիռը հանրային նախրում, վճռական պայքար մղել մայրական կազմի ստերջության և անասունների անկումների դեմ, նվազագույնի հասցնել կենդանիների ներտնտեսային ծախսումները, արմատապես բարելավել տնտեսությունների անասնաբուժական սպասարկումը, ամենուրեք կիրառել կենդանիների ինտենսիվ բտում:

Մսի, կաթի և ձվի արտադրությունն ավելացնելու զգալի ռեզերվ ունեն անասնապահական կոմպլեքսները, թռչնաֆաբրիկաները, մեքենայացված խոշոր ֆերմաները: Սակայն դրանց աշխատանքի արդյունավետությունը դեռևս շատ ցածր է:

Արդյունաբերական թռչնաբուծության մեջ, օրինակ, միջին ձվատվությունը կազմում է ընդամենը 160 ձու՝ նախագծային կարողությամբ սահմանված 250-ի փոխարեն, 100 ձվից ստանում են 62 ճուտ, ընդ որում, որքան էլ տարօրինակ է, դրանց ավելի քան 35 տոկոսը սատկում է: Ցածր է բրոյլերների միջին քաշը՝ 1, 13 կգ: Եթե ավելացնենք, որ այդ ամենի հետ «Հայթռչնարդը» ունենում է տարեկան ավելի քան 25 հազար տոննա կերի գերածախս, ապա ակնհայտ կդառնա, թե ինչպիսի ծանր վիճակում է գտնվում այդ ճյուղը:

Հանրապետության գյուղատնտեսության մինիստրությունը պետք է ավելի լրջորեն և հետևողականորեն զբաղվի պետական անասնապահական համալիրների ու թռչնաֆաբրիկաների հարցերով, կազմակերպի դրանց հստակ և արդյունավետ աշխատանքը: Այս գործում անհրաժեշտ է բարձրացնել կուսակցության այն շրջանային կոմիտեների պատասխանատվությունը, որոնց տարածքում են գտնվում համալիրները:

Հանրային անասնապահության հետ մեկտեղ պարենային ռեսուրսների համալրման գործում կարևոր տեղ են գրավում կոլտնտեսականների, սովխոզների բանվորների և ծառայողների անձնական, ինչպես նաև ձեռնարկությունների և կազմակերպությունների օժանդակ տնտեսությունները: Հարկավոր է ավելի մեծ ուշադրություն նվիրել դրանց:

Հրատապ է դարձել էրոզիայի այլազան տեսակներից հանրապետության գյուղատնտեսական հողատարածությունների պահպանման պրոբլեմը:

Անտառային տնտեսության պետական կոմիտեն (նախագահ՝ ընկ. Հ. Ավագյան) հետևողականորեն չի կատարում անտառամելիորատիվ աշխատանքները հմտորեն կազմակերպելու, նոր անտառազանգվածների ստեղծումն արագացնելու և հանրապետության անտառների վիճակը բարելավելու, խոշոր տնկարանային տնտեսություններ ստեղծելու գործը:

Հանրապետության Մինիստրների խորհուրդը պետք է կոնկրետ միջոցներ ձեռնարկի, որպեսզի մինիստրություններն ու գերատեսչություններն անպայման կատարեն հակաէրոզային և հողապաշտպանական միջոցառումների ամբողջ համալիրը:

Արտադրության արդյունավետության բարձրացումը անխզելիորեն կապված է տնտեսությունների էկոնոմիկայի ամրապնդման հետ:

Մեղանում, սակայն, դեռևս վատ է կազմակերպված տնտեսությունների տնտեսագիտական ծառայությունը, դրանցից շատերում չի տարվում տնտեսագիտական վերլուծություն, այն չի դարձել տնտեսության կառավարման լծակ: Կատարվող աշխատանքների արժեքի իջեցումը, յուրաքանչյուր հեկտար հողի, խորանարդ մետր ջրի, ամեն մի տոննա պարարտանյութի, տեխնիկայի միավորի առավել արդյունավետ օգտագործումն ու փոխհատույցը պետք է դառնան տնտեսավարման հիմքը: Այդ ժամանակ մեզ մոտ չեն լինի տնտեսապես թույլ և վնասով աշխատող տնտեսություններ:

Կուսկազմակերպությունների տնտեսական ղեկավարների համար հատկապես կարևոր խնդիր պետք է լինի պայքարը գյուղատնտեսական արտադրանքի բարձր որակի համար, բերքի կորուստների դեմ, փոխադրման և պահպանման ժամանակ մթերքների փչացման դեմ:

Ըստ ամենայնի պետք է բարելավվի կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության գործը:

Գյուղատնտեսության մի շարք ճյուղերում և, առաջին հերթին, անասնապահության մեջ, զգացվում է բարձրագույն և միջնակարգ կրթությամբ մասնագետների, ինչպես նաև մասսայական մասնագիտությունների կադրերի՝ մեխանիզատորների, մեքենայական կթի վարպետների, անասնապահական համալիրների օպերատորների պակաս:

Գյուղատնտեսության մինիստրությունը, շրջանային կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական, գյուղատնտեսական մարմինները պարտավոր են տեղերում իրականացնել մասնագետներին, հատկապես երիտասարդներին ամրացնելու, նրանց աշխատանքի ու կենցաղի անհրաժեշտ պայմաններ ստեղծելու միջոցառումների կոմպլեքս: Պետք է հատուկ ուշադրություն դարձնել միջին օղակը եռանդուն և գործիմաց մասնագետներով ամրապնդելուն:

Գյուղատնտեսության հետագա զարգացման՝ կուսակցության առաջադրած խնդիրների լուծման գործում հատկապես կարևոր դեր է պատկանում միջտնտեսային կոոպերացման և ագրարային-արդյունաբերական ինտեգրացման բազայի վրա գյուղատնտեսական արտադրության մասնագիտացմանն ու համակենտրոնացմանը:

Անհնար է հասնել բարձր արդյունավետության, երբ հանրապետության տնտեսությունների մեծ մասի գյուղատնտեսական արտադրությունն անթույլատրելիորեն բազմաճյուղ բնույթ է կրում, որտեղ ցածր մակարդակի վրա են արտադրության տեխնոլոգիան և կազմակերպումը: Ցանքերի և տնկարկների մասնատվածությունը, շատ կոլտնտեսությունների և սովխոզների անասնապահական ֆերմաների սակավազորությունն այսօր բնորոշ են հանրապետության գյուղատնտեսությանը: Այդ ամենը հետևանք է այն բանի, որ չի մշակվել և իրականացվել գյուղատնտեսական արտադրության միջշրջանային և ներշրջանային ռացիոնալ մասնագիտացման ու համակենտրոնացման կոնկրետ նպատակային ծրագիր: Պետպլանը, գյուղատնտեսության մինիստրությունը պետք է շուտափույթ կերպով լուծեն այդ հարցերը, հաշվի առնելով յուրաքանչյուր շրջանի և տնտեսության արտադրության կոնկրետ պայմանները:

Հանրապետության գյուղատնտեսության հետագա վերելքի և ինտենսիվացման գործը պահանջում է մշտապես ամրապնդել գիտության կապը գյուղատնտեսական արտադրության հետ:

Մեր գիտական կազմակերպությունների, գիտնականների խնդիրն է առաջիկայում էլ ակտիվ հետազոտություններ կատարել, որոնք ուղղված լինեն գյուղատնտեսական կուլտուրաների բարձր բերքատու սորտերի և անասունների բարձր մթերատու ցեղատեսակների ստեղծմանը, գյուղատնտեսական արտադրության կիրառական պրոբլեմների մշակմանը, դրա փոխադրմանը ինդուստրիալ ուղու վրա, արտադրությանը կոնկրետ օգնություն ցույց տալուն:

Դեռևս լուրջ թերություններ կան նաև գյուղական շինարարության ասպարեզում: Տասներորդ հնգամյակի տարիներին հանրապետության գյուղատնտեսության մեջ չեն իրացվել 133 միլիոն ռուբլու պետական կապիտալ ներդրումներ: Հիմնական ֆոնդերի գործարկման պլանը կատարվել է 69 տոկոսով: Կոլտնտեսություններում և պետական տնտեսություններում անբավարար է իրականացվում նաև բնակարանների, դպրոցների, մանկապարտեզների և մանկամսուրների, կուլտուր-կենցաղային այլ օբյեկտների շինարարությունը:

Մինիստրությունները, կապալառուներն ու պատվիրատուները, շրջանային կուսակցական և սովետական մարմինները, բոլոր նրանք, ովքեր ուղղակի առնչվում են գյուղական շինարարության հետ, միշտ պետք է հիշեն, որ դա գյուղատնտեսության վերելքի կարևոր նախադրյալներից մեկն է, և պետք է ամենավճռական միջոցները ձեռնարկեն կենսականորեն կարևոր այդ գործում եղած թերությունները վերացնելու համար:

Լուծելով գյուղատնտեսության հետագա զարգացման հարցերը, Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և հանրապետության կառավարությունը հաշվետու ժամանակաշրջանում մի շարք կոնկրետ միջոցներ են ձեռնարկել գյուղական բնակ-



չությանը տեղերում ամրացնելու, ինչպես նաև ռեմիգրացիայի պայմաններ ստեղծելու ուղղությամբ: Եվ այսօր կարող ենք արձանագրել, որ հասել ենք որոշ դրական արդյունքների: Արտագնացության տեմպերը դանդաղել են: Մեծ թվով մարդիկ վերադարձել են առանձին շրջաններ: Դրան նպաստել է, նախ, գյուղատնտեսության արտադրության զարգացման ասպարեզում վարվող ճիշտ քաղաքականությունը, գյուղում կապիտալ շինարարության ծավալների մեծացումը, ապա՝ արդյունաբերական արտադրության խելամիտ արագ զարգացումը, հաշվի առնելով գյուղատնտեսական արտադրության շահերը:

Սակայն այդ բնագավառում դեռ շատ բան ունենք անելու:

Ամենից առաջ անհրաժեշտ է այսուհետ ևս գյուղում ստեղծել արդյունաբերական ձեռնարկությունների մասնաճյուղեր, հաշվի առնելով նաև տղամարդկանց աշխատանքի կիրառումը: Դա կկրճատի նաև տարագնացությունը:

Անհրաժեշտ է վարել կոլտնտեսականներին ու սովխոզների բանվորներին տնամերձ հողամասերով ապահովելու, գյուղի բնակիչների համար հարմարավետ բնակարանների կառուցման պայմաններ ստեղծելու ռացիոնալ քաղաքականություն, առաջիկայում ևս ընդլայնել սպասարկումների ոլորտը, ավտոճանապարհների ցանցը: Դա կնպաստի մարդկանց է՛լ ավելի կապելու գյուղին, հողին:

Այնուհետև: Չէ՛ որ միանգամայն անթույլատրելի է, երբ գյուղական բնակչության 57,2 տոկոսը ընդհանրապես կով չի պահում, 57,3 տոկոսը չի պահում ոչխար և 91 տոկոսը՝ խոզ: Դա հանգեցնում է այն բանին, որ գյուղական բնակիչները հողագործական և անասնապահական մթերքների արտադրողներից աստիճանաբար վերածվում են սպառողների:

Շրջանային կուսակցական, սովետական, գյուղատնտեսական մարմինները, գյուղական և ավանային սովետների, կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավարները պետք է հասնեն այն բանին, որ գյուղում բնակվող յուրաքանչյուր մարդ անասուն պահի անձնական օժանդակ տնտեսություններում և տնամերձ հողամասերում աճեցնի գյուղատնտեսական տարբեր պարենային կուլտուրաներ:

Պետք է նաև կազմակերպել նրանց անասնակերով, պարարտանյութերով, սերմացուով, նյութատեխնիկական միջոցներով օգնելու գործը, օժանդակել անասուններ ձեռք բերելու հարցում, մի խոսքով, բոլոր հնարավորություններն ստեղծել գյուղական բնակչության անձնական տնտեսությունն արդյունավետ վարելու համար:

Հանրապետության պետպլանը, համապատասխան մինիստրություններն ու գերատեսչությունները պետք է տասնմեկերորդ հնգամյակում ավելի ակտիվորեն լուծեն գյուղական բնակավայրերի սոցիալ-տնտեսական զարգացման հարցերը:

Ընկերնե՛ր:

ՍՄԿԿ Կենտկոմի 1980 թվականի հոկտեմբերյան պլենումը խնդիր դրեց մշակել պարենային ծրագիր, ըստ ամենայնի ավելացնել գյուղատնտեսական մթերքների արտադրությունը բնակչությանը սննդամթերքներով և վերամշակող արդյունաբերությունը հումքով ապահովելու համար: Մեր խնդիրն է ծանրակշիռ ավանդ ներդնել այդ համաժողովրդական գործում:

Թույլ տվեք վստահություն հայտնել, որ կուսակցական, սովետական, գյուղատնտեսական մարմինները, սկզբնական կուսակցական կազմակերպությունները, գյուղատնտեսության ղեկավարներն ու մասնագետները, գյուղի բոլոր աշխատավորները առավելագույն ջանքեր կգործադրեն ճյուղի հետագա զարգացման, արտադրանքի արտադրության ծավալների մեծացման համար, հարվածային աշխատանքով կապահովեն տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքների կատարումը: (Ծափահարություններ):

***

Ընկերնե՛ր:

Հաշվետու ժամանակաշրջանում հանրապետությունում իրականացվել է կապիտալ շինարարության մեծ ծրագիր:

Տասներորդ հնգամյակում ֆինանսավորման բոլոր աղբյուրներով ժողովրդական տնտեսության մեջ կապիտալ ներդրումները կազմել են 5 միլիարդ ռուբլի, որը 13,3 տոկոսով ավելի է, քան նախորդ հնգամյակում:

Շահագործման են հանձնվել 4,9 միլիարդ ռուբլի գումարով հիմնական ֆոնդեր կամ 29,4 տոկոսով ավելի, քան 1971—1975 թվականներին: Կառուցվել և շահագործման են հանձնվել, վերակառուցվել և ընդլայնվել են արտադրական և ոչ արտադրական նշանակություն ունեցող ժողովրդատնտեսական մեծ թվով կարևոր օբյեկտներ:

Հանրապետության շինարարների խոշոր նվաճումն է այնպիսի օբյեկտների կառուցումը ինչպիսիք են՝ Հայաստանի ատոմային կայանը, Երևանի մետրոպոլիտենը, Արփա—Սևան եզակի թունելը, «Հրազդանի մեքենաշինարար» գործարանը, քլորոպրենի արտադրության արտադրամասերը, Ազատի, Ջողազի ջրամբարները, Թալինի ու Սևանի խտացրած կերի գործարանները, անասնապահական համալիրները և թռչնաբուծական ֆաբրիկաները, Մասիս—Նուռնուս երկաթուղագիծը՝ Հրազդան գետի բարձր, միակամար կամրջով, Մեղրի—Քաջարան ավտոճանապարհը, Երևանի օդանավակայանի առաջին հերթը, օպերայի և բալետի թատրոնի կոմպլեքսային վերակառուցումը, Սարդարապատի համալիրի թանգարանը և այլ օբյեկտներ:

1976—1980 թվականներին հանրապետությունում ֆինանսավորման բոլոր աղբյուրների հաշվին կառուցվել և շահագործման են հանձնվել 5,6 միլիոն քառակուսի մետր ընդհանուր օգտակար մակերեսով բնակելի տներ, որով հնարավորություն է ընձեռվել բարելավելու ավելի քան 570 հազար մարդու բնակարանային պայմանները:

Շահագործման են հանձնվել 143 հազար աշակերտական տեղով նոր հանրակրթական դպրոցներ, 30,6 հազար տեղով մանկական նախադպրոցական հիմնարկներ, 4016 մահճակալով հիվանդանոցներ, 7436 հաճախումների համար նախատեսված պոլիկլինիկաներ, մեծ թվով մշակութային, կոմունալ-կենցաղային այլ օբյեկտներ:

Հնգամյակի ընթացքում կառուցվել և շահագործման են հանձնվել 375 կմ նոր ավտոճանապարհներ, 820 կմ ջրատարներ և ջրատար ցանցեր, 330 կմ կոյուղու կոլեկտորներ և ցանցեր, 100 կմ ջերմաֆիկացման ուղեգծեր, 6 խոշոր ավտոմատացված կաթսայատներ: Երևան քաղաքում շահագործման է հանձնվել աէրացիայի՝ կեղտաջրերի մաքրման խոշոր կայան, օրական 300 հազար խորանարդ մետր կարողությամբ: Կառուցվել և շահագործման են հանձնվել 1072 կմ գազամուղային գծեր, 130 հազար բնակարան գազիֆիկացվել է բնական և հեղուկ գազով:

Զգալի աշխատանք է կատարվել շինարարական ինդուստրիայի բազայի կարողությունների զորացման ուղղությամբ: Բարձրացել է շինարարության տեխնիկական զինվածությունը: Շինարարության մեջ աշխատանքի արտադրողականությունն աճել է 20,5 տոկոսով:

Հանրապետության շինարարական և մոնտաժային կազմակերպությունները գլխավոր կապալառուի համար սահմանված պլաններն ընդհանուր առմամբ կատարել են 102 տոկոսով և սեփական ուժերով աշխատանքների պլանները՝ 103 տոկոսով:

Ձեռք բերած հաջողությունների հետ մեկտեղ պետք է նշել, որ կապիտալ շինարարության բնագավառում դեռևս կան էական թերություններ, որոնք լրջորեն արգելակում են հանրապետության արտադրական պոտենցիալի արագ զարգացման խնդիրների և սոցիալական զարգացման հարցերի լուծումը:

Հնգամյակի տարեկան պլանների գումարով հիմնական ֆոնդերի գործարկման պլանը թերակատարվել է 7 տոկոսով, հատկացված պետական կապիտալ ներդրումները հանրապետությունում իրացվել են 96 տոկոսով, այդ թվում շինմոնտաժային աշխատանքներինը՝ 98,9 տոկոսով:

Պետական կապիտալ ներդրումների հաշվին հնգամյա պլանով նախատեսվածից պակաս են շահագործման հանձնվել 221 հազար քառակուսի մետր ընդհանուր մակերեսով բնակելի տներ, 26,7 հազար աշակերտական տեղով հան-



րակրթական դպրոցներ, 1,1 հազար տեղով մանկական նախադպրոցական հիմնարկներ:

Կապիտալ շինարարության պլանների թերակատարումը հետևանք է այն բանի, որ հանրապետության շինարարական և մոնտաժային մինիստրություններն ու գերատեսչությունները, պետպլանը և պետշինը, կապիտալ ներդրումների պրոցեսի հետ անմիջական առնչություն ունեցող մյուս մարմիններն ու կազմակերպությունները ինչպես հարկն է չեն կատարել կապիտալ շինարարության պլանավորումը, կազմակերպումը և կառավարումն ըստ ամենայնի բարելավելու և նրա որակը բարձրացնելու վերաբերյալ Հայաստանի կոմկուսի XXVI համագումարի առաջադրած խնդիրը:

Մի շարք մինիստրությունների, գերատեսչությունների, շինարարական ու մոնտաժային տրեստների և վարչությունների սկզբնական կուսկազմակերպությունները ու ղեկավարներն իրենց աշխատանքի ոճն ու մեթոդները չեն վերակառուցել արդի պահանջներին համապատասխան, որոնք բխում են կապիտալ շինարարության արդյունավետությունը բարձրացնելու խնդիրներից: Նրանց քաղաքական, կազմակերպչական և տնտեսական գործունեության մեջ դեռևս կան բազմաթիվ թերություններ ու վրիպումներ, որոնցից գլխավորն է պետական, պլանային, կատարողական կարգապահության և շինարարական արտադրության կազմակերպման ցածր մակարդակը:

Շինարարական մինիստրությունների և գերատեսչությունների կոլեգիաները, շատ ստորաբաժանումների կուսակցական կազմակերպությունները նպատակասլաց աշխատանք չեն կատարում, որպեսզի կոմպլեքսայնորեն, գիտականորեն հիմնավորված լուծվեն շինարարական արտադրության զարգացման և կազմակերպման հարցերը, մշտապես բարձրանա ղեկավար աշխատողների պատասխանատվությունը նրանց վստահված տեղամասերի գործերի վիճակի համար, առկա արտադրական հնարավորությունների, նյութական, ֆինանսական և աշխատանքային ռեսուրսների լիակատար և արդյունավետ օգտագործման համար, որպեսզի նրանք հետևողականորեն կատարելագործեն իրենց մասնագիտական գործիմացությունը, աշխատանքի ոճն ու մեթոդները:

Հաշվետու ժամանակաշրջանում հատկապես անբավարար է աշխատել արդյունաբերական շինարարության մինիստրությունը, որը ամբողջ հնգամյակի ընթացքում սիստեմատիկաբար թերակատարել է կապալային աշխատանքների պլանները, չի ապահովել ժողովրդատնտեսական մեծ թվով կարևոր օբյեկտների ժամանակին գործարկումը: Հնգամյակի ընթացքում այդ մինիստրությունը գլխավոր կապալառուի միջոցով պակաս է իրացրել մոտավորապես 53 միլիոն ռուբլի, դրանցից 35 միլիոն ռուբլին՝ սեփական ուժերով կատարվող աշխատանքների գծով: Դանդաղել են շինարարական աշխատանքների ծավալների աճի տեմպերը: Մինիստրության 17 տրեստներից ամեն տարի 5-ից 11-ը չեն կատարել կապալային աշխատանքների պլանները, ավելի մեծ թվով տրեստներ չեն ապահովել աշխատանքի արտադրողականության պլանավորված աճը, աշխատանքների ինքնարժեքի իջեցումը, ունեցել են աշխատավարձի ֆոնդի գերածախս և այլն:

Արդեն անցել է երկու տարի, ինչ փոխվել է արդյունաբերական շինարարության մինիստրության ղեկավարությունը, բայց մինիստրության կոլեգիան և մինիստր ընկ. Է. Ավագյանը շոշափելիորեն չեն բարելավել աշխատանքը, չեն դիմում ակտիվ միջոցների, որոնք ապահովեին մինիստրության գործունեության պատշաճ բարելավումը, թե՛ մինիստրության ապարատի և թե ենթակա օղակների աշխատանքում տեղ գտած լուրջ թերությունների վերացումը:

Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի մոնտաժային և հատուկ շինարարական աշխատանքների գլխավոր վարչության (պետ՝ ընկ. Հ. Ղամբարյան) աշխատանքի բնորոշ թերությունն այն է, որ նրա կազմակերպությունները, հատկապես «Հայարդմոնտաժ» տրեստը, «Արդվենտիլյացիա» վարչությունը և այլ կազմակերպություններ կապալային աշխատանքների ծրագիրը կատարում են նորոգման և այլ աշխատանքների պլանների գերակատարման հաշվին, իսկ արդյունաբերական և գյուղական շինարարության մինիստրությունների հանդեպ ստանձնած ենթակապալային պայմանագրային պարտավորությունները

թերակատարում են, որով ձախողվում են շատ օբյեկտների գործարկման ժամկետները: Ենթակապալային աշխատանքների պլանների թերակատարումը պայմանավորված է ոչ միայն մոնտաժի ոչ հստակ կազմակերպմամբ, այլև նրանով, որ շինարարներն ու մոնտաժողները հաճախ անընդունակ են լինում ապահովելու աշխատանքների կատարումը համատեղված գրաֆիկներով:

Գյուղական շինարարության մինիստրությունը (ընկ. Գ. Թադևոսյան) հասել է կապալային աշխատանքների պլանների մշտական կատարման, աշխատանքի որոշ որակական ցուցանիշների բարելավման: Սակայն գյուղական շինարարության մինիստրությունը, որը կոչված է կառուցելու ամենից առաջ գյուղատնտեսական օբյեկտներ, սիստեմատիկաբար չի կատարում գյուղատնտեսության մինիստրության օբյեկտների թե՛ կառուցման և թե գործարկման պլանները, որ անհանդուրժելի է:

Ավտոմոբիլային ճանապարհների շինարարության և շահագործման մինիստրությունը, ապահովելով նոր ճանապարհների կառուցման պլանների կատարումը, չի հասել դրանց որակի պատշաճ բարելավման, որի հետևանքով այդ ճանապարհները շուտ են փչանում: Ճանապարհների նորոգումն ու շահագործումն իրականացվում է անբավարար, որը հանգեցնում է ավտոմոբիլների արագ մաշման, տրանսպորտային ծախսերի թանկացման: Մինիստր ընկ. Գ. Մելքումյանը, նրա տեղակալները և վարչությունների պետերը պետք է վճռական միջոցներ ձեռնարկեն այդ թերությունները վերացնելու համար:

Առանձնապես ծանր կացություն է ստեղծվել շինանյութերի արդյունաբերության մինիստրությունում, որտեղ բարձիթողի վիճակում է նոր տեխնիկայի և առաջավոր տեխնոլոգիայի ներդրման, արտադրության կազմակերպման բարելավման և արտադրանքի որակի բարձրացման գործը, որի հետևանքով սիստեմատիկաբար չեն կատարվել ցեմենտի, շիֆերի և ուրիշ շատ շինանյութերի թողարկման պլանները: Մինիստրության սիստեմում տեղ են գտել պետական կարգապահության լուրջ խախտումներ: Մինիստրության կոլեգիան և նոր մինիստր ընկ. Լ. Ղազարյանը պետք է գործնական միջոցների դիմեն ձեռնարկությունների աշխատանքը բարելավելու, թողարկվող արտադրանքի որակը բարձրացնելու և շինանյութերի արդյունաբերությունն է՛լ ավելի զարգացնելու համար, որը հանրապետությունում առավել հեռանկարային ճյուղերից մեկն է:

Համանման թերություններ կան նաև «Հայգյուղշին» (պետ՝ ընկ. Մ. Գևորգյան), «Հայտրանսշին» (ընկ. Ե. Ավետիսով) և այլ շինարարական կազմակերպությունների աշխատանքում:

Շինարարները լուրջ հանդիմանության են արժանի աշխատանքների դեռևս ցածր որակի համար: Ոչ բոլոր շինարարական մինիստրությունների, տրեստների և վարչությունների ղեկավարներն են, որ ճիշտ հետևություններ են հանգել Հայաստանի կոմկուսի XXVI համագումարում արված քննադատությունից. դեռևս քիչ են հոգ տանում շինարարական ու մոնտաժային աշխատանքների որակի բարձրացման մասին, կառույցներում թույլ են տալիս շինարարական նորմաների և կանոնների խախտումներ, հաճախ շենքերն ու շինությունները հանձնում են թերություններով ու դեֆեկտներով, իսկ պատվիրատուներն ու ընդունող հանձնաժողովները անհրաժեշտ սկզբունքայնություն չեն ցուցաբերում և դրանք ընդունում են շահագործման: Այս հարցում անբացատրելի լիբերալ դիրք է բռնել հանրապետության պետշինը (նախագահ՝ ընկ. Կ. Մարության), որը բավարար պահանջկոտություն չի ցուցաբերում և խոտանարարներին չի ենթարկում օրենքով սահմանված խստագույն պատասխանատվության:

Շինարարության մեջ դեռևս ակտիվորեն չեն ներդրվում տեխնիկական առաջընթացի նվաճումները:

Մի շարք շինարարական տրեստներում նոր տեխնիկայի և առաջավոր տեխնոլոգիայի ներդրման միջոցառումների մեծ մասը պլանավորվում և իրականացվում է այնպիսի փոքր մասշտաբներով և ոչ կոմպլեքսայնորեն, որ էական ազդեցություն չի ունենում գործերի վիճակի վրա: Դանդաղ են արմատավորվում արտադրության կազմակերպման առաջավոր մեթոդները, փոքր մեքենայացման միջոցները:

Կապալային կազմակերպություններում դեռևս մեծ է ձեռքի աշխատանքի



տեսակարար կշիռը՝ 72,1 տոկոս: Շինարարության մեջ ձեռքի ծանր աշխատանքով զբաղված բանվորների թիվը, օրինակ, 1979 թվականին, 1975 թվականի համեմատությամբ, ավելացել է 4,1 տոկոսով, մինչդեռ բանվորների թվի ընդհանուր աճը կազմել է 2,5 տոկոս:

Շինարարական արտադրության կազմակերպման, նոր տեխնիկայի ներդրման գործում եղած լուրջ թերությունների, աշխատանքային ցածր կարգապահության հետևանքով հանրապետության շինարարական կազմակերպություններում աշխատանքի արտադրողականությունն ավելի դանդաղ է բարձրացել, քան նախատեսված էր հնգամյա պլանով:

Շինարարական մինիստրությունների, տրեստների և վարչությունների ղեկավարները, սկզբնական կուսակցական և արհմիութենական կազմակերպությունները դեռևս ինչպես հարկն է չեն հոգում բանվորների աշխատանքի ու կենցաղի բարելավման մասին: Շատ կառույցներում չեն ստեղծվում ճաշարաններ, ցնցուղասենյակներ և այլ անհրաժեշտ սրահներ: Այս ամենը հանգեցնում է կադրերի մեծ հոսունության, չի նպաստում աշխատավորական կայուն կոլեկտիվների ստեղծմանը:

Քիչ չեն շինարարական և մոնտաժային այն կազմակերպությունները, որոնք դեռևս անբավարար են իրականացնում հսկողությունը նյութերի և դրամական միջոցների ծախսման նկատմամբ, թույլ են տալիս աշխատանքի նորմավորման կանոնների խախտումներ, կատարված աշխատանքների ծավալների հավելագրումներ, ամեն կարգի անարտադրողական ծախսումներ, սոցիալիստական սեփականության վատնման ու հափշտակման փաստեր:

Վճռական բարելավում է պահանջում նաև շինարարական արտադրական կարողությունների, մեքենաների ու մեխանիզմների օգտագործման և ինդուստրիայի զարգացման գործը: Շինարարական ինդուստրիայի օբյեկտների կառուցման պլանները շարունակաբար չեն կատարվում: Այնպիսի ձեռնարկությունների կարողությունները, ինչպիսիք են՝ Մասիսի ատաղձագործական իրերի կոմբինատը, Աբովյանի և էջմիածնի խոշորապանել տնաշինության, Արթիկի տուֆաբլոկների գործարանները, տարիներ շարունակ օգտագործվում են ակնհայտորեն անբավարար և անարդյունավետ:

Շինարարական մինիստրությունների և գերատեսչությունների, տրեստների և վարչությունների սկզբնական կուսկազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է իսպառ վերացնել նշված թերությունները, արմատապես բարելավել գործերը շինարարական արտադրությունում:

Շինարարական մինիստրություններն անթույլատրելի պահպանողականություն են դրսևորում նոր արդյունավետ կոնստրուկցիաների, առարկաների և շինանյութերի կիրառման գործում: Գյուղական շինարարության մինիստրությունը, օրինակ, չնայած վաղուց հասունացած պահանջարկին, չի կազմակերպել գյուղատնտեսական կառույցների համար թեթևացված հավաքովի երկաթբետոնե կոնստրուկցիաների մասսայական թողարկումը:

Նախագծային կազմակերպությունները, իրենց հերթին, բավարար հետևողականություն և սկզբունքայնություն հանդես չեն բերում նոր, արդյունավետ կոնստրուկցիաների և նյութերի կիրառման հարցում, ընկրկելով շինարարական մինիստրությունների պահպանողականության առջև:

Սա պետք է խստորեն դատապարտել: Կուսակցական կազմակերպությունները պետք է սկզբունքային դիրք գրավեն այս հարցում:

Խիստ քննադատության են արժանի պատվիրատուները: Առանձին պատվիրատու մինիստրություններ և գերատեսչություններ դեռևս թույլ են տալիս մեծ թվով կառույցների վրա հատկացված միջոցները ցրելու փաստեր, գործարկման պլաններում մտցնում նախագծերով, յուրացված հողամասերով, ֆինանսավորմամբ, սարքավորումներով լրիվ չապահովված օբյեկտներ, միջոցները չեն կենտրոնացնում գործարկվելիք օբյեկտների վրա, որը հանգեցնում է շինարարության ժամկետների ձգձգման և թանկացման:

Նմանօրինակ փաստեր կարելի է բերել շատ տեղական սովետների, մինիստրությունների և գերատեսչությունների աշխատանքի պրակտիկայից, հատկապես այնպիսի խոշոր պատվիրատուների, ինչպիսիք են Երևանի քաղսովետը,

տև կառուցելու հետևանքով, օբյեկտը գործարկելիս այնքան հին էր մնացել, որ դրանից անմիջապես հետո հարկ եղավ սկսել արմատական վերակառուցումը։ Կամ, ժամանակին Ալավերդի քաղաքում ձեռնամուխ եղանք կապրոնային թիկնոցների գործարանի կառուցմանը։ Նախագծումն ու շինարարությունն այնքան ձգձգվեցին, որ արտադրության յուրացման պահին հիշյալ թիկնոցներն արդեն հնացել էին ու օգտագործումից դուրս եկել։ Հարկ եղավ երկար ժամանակ վերապրոֆիլավորել արտադրությունը։ Բայց չէ՞ որ մենք կորցրինք թե՛ ժամանակ, թե՛ միջոցներ և չստացանք ցանկալի արդյունք։

«Մեկ է՝ ի վերջո անելու ենք», «Վերջում ամեն ինչ իր տեղը կգա» հոգեբանությունը հանգեցնում է դրական փոփոխությունների պասիվ սպասումի, շատ թանկ է նստում մեզ վրա։

Մեզանում որոշ տեղերում դեռ գոյություն ունի որոշակի բնագիծը նվաճելուց, որևէ խնդիր լուծելուց հետո դադարի, անբացատրելի կանգառի սովորույթ։ Եվ դա ոչ այն պատճառով, որ վերլուծվում է կատարվածը, տեղի է ունենում նոր պրոցեսի հասունացում, մշակվում են նոր լուծումներ։ Այլ այն պարզ պատճառով, որ կա ժամանակի հանդեպ անփութության արատավոր սովորույթ։ Դրանից հարկավոր է վճռականորեն ձերբազերծվել։

Անդուլ, նպատակասլաց աշխատել, արարել, գործել ահագնացող թափով, պայքարել ծրագրվածի իրականացման համար, ամեն օր մի նոր քայլ անել և անպայման՝ ավելի առաջ, ամեն օր նոր արդյունքի հասնել և անպայման՝ ավելի մեծ արդյունքի, բազմապատկել ձեռք բերածը — միայն դա կարող է երաշխավորել անընդմեջ հաջողությունը, պրոգրեսն ու զարգացումը։

Սա, ընկերնե՛ր, պարզապես ոչ թե զուտ կազմակերպական բնույթի հարց է. սա աշխատանքի ոճի հարց է, հոգեբանական, սոցիալական, վարքագծային բնույթի հարց։

Ահա թե ինչպիսի կամք ու խառնվածք, աշխատանքի ինչպիսի ոճ պետք է պատվաստեն կուսակցական կազմակերպությունները յուրաքանչյուր աշխատավորի։

Մեր ամբողջ գործունեության կենտրոնում պետք է գտնվի պայքարը արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման համար։ Բայց որպեսզի, ինչպես ընդգծել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը, այդ հակիրճ ու ճշգրիտ ձևակերպումը չդառնա ծամծմված ֆրազ, չկորցնի իր ակտիվ, մոբիլիզացնող բնույթը, հարկավոր է օրավուր, եռանդուն կերպով ստուգել, թե արդյոք ամեն ինչ արվո՞ւմ է դրա կենսագործման համար։

Մենք հենց այդպիսի չափանիշով պետք է մոտենանք էկոնոմիկայի բնագավառում կուսակցության յուրաքանչյուր քաղկոմի ու շրջկոմի, կուսակցական կազմակերպության, յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվի, սովետական և տնտեսական մարմնի աշխատանքի գնահատմանը։

Հանրապետության էկոնոմիկան նոր մակարդակի բարձրացնելը, տասնմեկերորդ հնգամյակի բարդ խնդիրների լուծումը պահանջում են մշտապես բարելավել դրա զարգացման կուսակցական ղեկավարումը։

Անհրաժեշտ է, որ մենք հանրապետության տնտեսական ու սոցիալական հետագա զարգացման պրոբլեմները լուծելիս հանդես բերենք համակարգված, ծրագրային մոտեցում, որ մեր գործունեությանը բնորոշ դառնան հետևողականությունը, ստեղծագործական մոտեցումը, կոնստրուկտիվ գործարարությունը։ Մեր առջև ծառացած խնդիրների լուծումը պահանջում է արդյունավետորեն գործի գնել մեր քաղաքական, կազմակերպական, մտավոր և սահմանակարգային բոլոր հնարավորությունները։

Էկոնոմիկայի կուսակցական ղեկավարումը օրգանապես ներառնում է արտադրության կառավարման գործում աշխատավորների լայն մասնակցությունը, սոցիալիստական մրցության ըստ ամենայնի զարգացումը, աշխատանքի նկատմամբ յուրաքանչյուր աշխատավորի գիտակցական, հոգատար վերաբերմունքով համակելը։

Մենք բոլորս, ինչպես նշել է Վ. Ի. Լենինը, պետք է սովորենք գիտակցաբար ընտրել պայքարի այն միջոցները, եղանակներն ու մեթոդները, որոնք ի



վիճակի են ուժերի և միջոցների նվազագույն ծախսման պայմաններում տալ առավելագույն և առավել կայուն արդյունքներ։ (Ծափահարություններ)։

## II. ԺՈՂՈՎՐԴԻ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅՈՒՆԸ՝ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՆՊԱՏԱԿ

Ընկերնե՛ր։

Մեր կուսակցության գործունեության գերագույն նպատակը մարդկանց նյութական և հոգևոր հարաճուն պահանջմունքների առավել լրիվ բավարարումն է։

Կուսակցության հետևողականորեն վարած ժողովրդի կենսամակարդակի անշեղ բարձրացման կուրսը արգասալի պտուղներ է բերում մեր հասարակության սոցիալական զարգացման բոլոր ոլորտներում։

Տասներորդ հնգամյակի տարիներին հանրապետության աշխատավորների բարեկեցության աճի հիմքում ընկած էր՝ մի կողմից սպառողական ապրանքների արտադրության և վաճառքի ավելացումը, մյուս կողմից՝ աշխատավորների եկամուտների մշտական աճը՝ շնորհիվ աշխատավարձի, սպառման հանրային ֆոնդերի բարձրացման, հարկերի նվազեցման։

Այդ տարիներին հանրապետության բնակչության ռեալ եկամուտներն աճեցին 22,8 տոկոսով։ Բանվորների և ծառայողների ամսական միջին աշխատավարձն ավելացավ 17,4 տոկոսով։ Հանրային տնտեսության մեջ կոլտնտեսականների աշխատանքի վարձատրությունն ավելացավ 18 տոկոսով։ Զգալի գումար՝ 4,8 միլիարդ ռուբլի կազմեցին սպառման հանրային ֆոնդերը, որոնք հատկացվել են աշխատավորների սոցիալական և կուլտուրական պահանջմունքների ավելի լրիվ բավարարմանը, հանգստի կազմակերպմանը, կենսաթոշակների և կրթաթոշակների վճարմանը, ժողովրդական կրթության զարգացման ապահովմանը, բուժսպասարկման բարելավմանը։

Է՛լ ավելի զարգացավ առևտուրը, ծավալվեց բնակչության կենցաղային սպասարկումը։ Այդ ճյուղերի ձեռնարկություններն ու կազմակերպությունները ժամկետից շուտ կատարեցին հնգամյա առաջադրանքները։

Ապրանքաշրջանառության աճը հնգամյակի ընթացքում կազմեց 35 տոկոս, կենցաղային սպասարկումների իրացմանը՝ 68,2 տոկոս, իսկ ավտոտեխսպասարկման ծավալներն ավելացան 2,1 անգամ։

Բնակչությանը պլանից ավելի վաճառվել է 227,5 միլիոն ռուբլու պարենային և արդյունաբերական ապրանք, իրականացվել է 8,5 միլիոն ռուբլու կենցաղային սպասարկում։

Պետական և կոոպերատիվ առևտրի ցանցում ժողովրդական սպառման ապրանքների կարևորագույն տեսակների վաճառքը բնակչությանը աճել է հետևյալ չափերով. մսինը և թռչունինը՝ 22,4 տոկոսով, կենդանական յուղինը՝ 22,8, ձեթինը՝ 35, կաթինը և կաթնամթերքներինը՝ 34,2, պանրինը՝ 30, ձվինը՝ 62,8, գործվածքներինը՝ 22,4, հագուստինը և սպիտակեղենինը՝ 26,7, կոշկեղենինը՝ 12,6, կահույքինը՝ 50, գորգերինն ու գորգեղենինը՝ 49,2, ռադիոապրանքներինը՝ 61,4, էլեկտրաապրանքներինը՝ 37,6 տոկոսով։

Բնակչության մեկ շնչին ընկնող կենցաղային ծառայություններն ավելացել են 52,7 տոկոսով։

Ամրապնդվել է սպասարկման ոլորտի նյութատեխնիկական բազան։

Ձեռք բերված հաջողություններն անվիճելի են։ Բայց կան նաև ոչ քիչ թերություններ։

Անբավարար է սպասարկման ոլորտի զարգացման խնդիրների կոմպլեքսային լուծման մակարդակը։ Այդ ցանցի օբյեկտների տեղաբաշխման ու զարգացման գիտականորեն հիմնավորված նախագծերի բացակայությունը նվազեցնում է կապիտալ ներդրումների արդյունավետությունը, դժվարություններ հարուցում ցանցի մասնագիտացման և տիպավորման իրականացման գործում։

կան ներգործություն կարող է և պետք է ունենա մեր քննադատությունը։ Այն պարտավոր է գրականության և արվեստի մեջ հետևողականորեն կիրառել կուսակցության գիծը, խորությամբ, սկզբունքային դիրքերից վերլուծել գրական-գեղարվեստական պրոցեսները, ժանրի զարգացման միտումները, ճիշտ գնահատել մեր արվեստագետների երկերն ու ստեղծագործական որոնումները, առաջնորդվելով բարձր չափանիշներով, բարձրացնել արդիական թեմատիկայի և վարպետության յուրացման հարցերը։

Ստեղծագործական միությունները և ընկերությունները (ընկ. ընկ. Վ. Պետրոսյան, Ս. Սաֆարյան, Է. Միրզոյան, Կ. Քալանթար, Հ. Ղափլանյան, Է. Տատուրյան), կուլտուրայի մինիստրությունը (ընկ. Գ. Առաքելյան), պետկինոն (ընկ. Ռ. Սամսոնով) պետք է գրականության, կերպարվեստի, երաժշտության, կինոյի և թատրոնի վարպետներին նպատակամղեն բարձր գաղափարական ստեղծագործությունների կերտմանը, նպաստեն ստեղծագործական աշխատողների պրոֆեսիոնալ աճին, գործարար իրադրության ստեղծմանը, քննադատության և ինքնաքննադատության զարգացմանը։ Նրանց կուսակցական կազմակերպությունների գործունեության մեջ առաջատար տեղ պետք է գրավի քաղաքական-դաստիարակչական մշտական աշխատանքը, գեղարվեստական կուլտուրայի գործիչների դաստիարակությունը սովետական հայրենասիրության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի և քաղաքացիականության ոգով։

Առանձնահատուկ ուշադրություն պետք է նվիրել ստեղծագործող երիտասարդության գաղափարական կոփմանը, նկատի առնելով, որ նա մեր գեղարվեստական կուլտուրայի ապագան է, բայց միևնույն ժամանակ՝ նաև այդ կուլտուրայի այսօրվա հնչուն ձայնը։

Ստեղծագործական միությունների, քննադատության, ավագ վարպետների կուսակցական և քաղաքացիական ուղղակի պարտքն է՝ պաշտպանելով երիտասարդների մեջ եղած այն ամենը, ինչ տաղանդավոր է, ճշմարտացի, արժեքավոր, նրանց մղել մեծ, հիրավի ստեղծագործական թռիչքների ու հայտնագործությունների։

Մեր գեղարվեստական կուլտուրան միշտ գտնվել է կոմունիզմի համար մղվող պայքարի առաջավոր բնագծերում։ Եվ մենք համոզված ենք, որ գրականության ու արվեստի գործիչները, պատասխանելով սովետական բազմազգ կուլտուրայի զարգացման նկատմամբ կուսակցության հայրական հոգատարությանը, դեռ ոչ քիչ հիանալի գործեր կստեղծեն մեր հերոսական ժողովրդի մասին, մեր ժամանակի փառավոր մեծագործությունների մասին։ (Ծափահարություններ):

Աշխատավորների գաղափարաքաղաքական և գեղագիտական դաստիարակության կարևոր կենտրոններ են կուլտուրայի հիմնարկները։ Այժմ հանրապետությունում գործում է ակումբների, կուլտուրայի տների և պալատների, թանգարանների և գրադարանների լայն ցանց։ Անցած հնգամյակում ակումբային հիմնարկների թիվը ավելացել է 55-ով, գրադարաններինը՝ 28-ով, բացվել է 11 թանգարան։ Զգալիորեն աճել է գեղարվեստական ինքնագործունեության կոլեկտիվների թիվը, որոնցից ավելի քան 120-ը ժողովրդականի պատվավոր կոչում են կրում։

Կուլտուրայի մինիստրությունը, կուսակցական և արհմիութենական մարմիններն ու կազմակերպությունները պետք է ավելի մեծ ուշադրություն նվիրեն կուլտուր-լուսավորական աշխատանքի մակարդակի բարձրացմանը, դրա հրատապ խնդիրների լուծմանը։

Ընկերնե՛ր։

ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների կենսագործման, մեր էկոնոմիկայի, գիտության և կուլտուրայի հետագա զարգացման համար մղվող պայքարում մեծ ու օգտակար գործ են կատարել մամուլը, հեռուստատեսությունը և ռադիոն։

Մենք այսօր ունենք ինֆորմացիոն-պրոպագանդիստական հզոր բազա՝ հրատարակվում են 83 թերթ, 89 հանդես։ Ավելացել է հեռուստահաղորդումների տևողությունը։ Հանրապետության բնակչության 99 տոկոսը ներկայումս հնարավորություն ունի դիտելու հեռուստատեսային հաղորդումներ։

Թերթերը, հանդեսները, հեռուստատեսությունն ու ռադիոն, մասսայական



ինֆորմացիայի բոլոր միջոցներն սկսել են ավելի հետևողականորեն և հմտորեն լուսաբանել հանրապետության հասարակական-քաղաքական և սոցիալ-տնտեսական կյանքը, աշխատավորների մեծագործությունները, կուսակցական, սովետական, տնտեսական կազմակերպությունների բազմաբովանդակ գործունեությունը, գաղափարաբարոյական դաստիարակության հարցերը։

Մամուլի, հեռուստատեսության և ռադիոյի բեղմնավոր աշխատանքի համար հանրապետությունում ստեղծված են բոլոր անհրաժեշտ պայմանները, և մենք իրավունք ունենք նրանց աշխատանքից ավելի մեծ փոխհատուցում պահանջելու։ Դրանց խմբագրությունները դեռ շատ բան պետք է անեն իրենց ելույթների, հրապարակումների և հաղորդումների ներգործունությունը բարձրացնելու, տնտեսական և կուլտուրական շինարարության, կուսակցական աշխատանքի, գաղափարաքաղաքական և բարոյական դաստիարակության կարևորագույն հարցերը խորապես, համակողմանիորեն արտացոլելու ուղղությամբ։

Պետք է ուղղակի ասել, որ առանձին լրագրային հրապարակումներին, ռադիո և հեռուստատեսային հաղորդումներին պակասում է կոմունիստական շինարարության մեր հաջողությունների կենդանի, տպավորիչ պատկերումը, առաջավոր փորձի կոնկրետ և իրազեկ պրոպագանդումը։ Որոշ նյութեր տառապում են մակերեսայնությամբ, բառային ճարճատյունով, երբեմն նաև՝ գաղափարական վրիպումներով, շաբլոնով և անճաշակությամբ։ Նման նյութերը չեն կարող ոչ գրավել, ոչ էլ խանդավառել։ Ընկերներ Լ. Կրոյանը, Բ. Մկրտչյանը, Մ. Մստոյանը, Ս. Պողոսյանը և մամուլի ու մասսայական ինֆորմացիայի միջոցների մյուս ղեկավարները պետք է լրջորեն մտածեն այդ մասին։

Դեռևս բավարար արդյունավետությամբ չի կիրառվում քննադատության սուր զենքը, այն երբեմն ուղղվում է մանր, մասնակի, ոչ էական փաստերի դեմ։

Միաժամանակ մեզանում կան նաև դեպքեր, երբ որոշ պաշտոնատար անձինք հիվանդագին են վերաբերվում մամուլի, ռադիոյի և հեռուստատեսության գործարար, կոնկրետ քննադատությանը, դրանից պատշաճ հետևություններ չեն անում, բարձրացված հարցերի լուծման գործում հանդես են բերում բյուրոկրատիզմ։ Քննադատական ելույթների նկատմամբ նման անթույլատրելի մոտեցումը միշտ պետք է ստանա կուսակցական, սկզբունքային գնահատական։

Թերթերի, հանդեսների, հեռուստատեսության և ռադիոյի խմբագրությունները պետք է գործուն միջոցներ ձեռնարկեն՝ արմատապես բարելավելու հրապարակումների գաղափարական և պրոֆեսիոնալ մակարդակը։ Մեր մամուլը, ինֆորմացիայի բոլոր միջոցները պետք է ավելի ակտիվորեն իրականացնեն մասսաների կոլեկտիվ պրոպագանդիստի ու կազմակերպչի իրենց դերը, մոբիլիզացնեն նրանց ուժերը կոմունիստական կուսակցության պատմական կանխագծումների կենսագործման համար մղվող պայքարում։

Գաղափարախոսական աշխատանքի կարևոր բնագավառն է գրահրատարակությունը։ Մեր ընթերցողներն ամեն տարի ստանում են մինչև 1.100 անուն գիրք՝ գրեթե 10,5 միլիոն օրինակ ընդհանուր տպաքանակով։ Նշելով գրահրատարակչական գործում եղած որոշ դրական տեղաշարժերը, պետք է ասել նաև այդ բնագավառում, ինչպես նաև Հրատպետկոմի (ընկ. Ս. Բաղդասարյան) գործունեության մեջ եղած էական թերությունների մասին։ Հրատարակչությունների թեմատիկ պլանները ոչ միշտ են այնպես կազմվում, որպեսզի հրատարակվող քաղաքական, գիտական, գեղարվեստական գրականությունը լիովին համապատասխանի արդի պահանջներին, բավարարի աշխատավորների պահանջմունքները։ Այդ գործում դեռևս վերացված չէ սուբյեկտիվ վերաբերմունքը։ Երբեմն բացակայում են կուսակցական սկզբունքայնությունն ու պահանջկոտությունը ձեռագրերի ընտրության գործում, որի հետևանքով լույս են տեսնում գաղափարական վրիպումներ պարունակող և գեղարվեստական ցածր որակ ունեցող առանձին գրքեր։ Լուրջ ուշադրություն է պահանջում մասսայական գրքային արտադրանքի պոլիգրաֆիական որակը բարելավելու հարցը։ Մեր հրատարակչությունների, պոլիգրաֆիայի աշխատողների կարևորագույն խնդիրն է վճռականապես բարձրացնել գրահրատարակության մակարդակը հանրապետությունում։

Ընկերնե՛ր։

Մեր դաստիարակչական աշխատանքի նպատակներից է նաև այն, որպեսզի մարդկանց նյութական հնարավորությունների աճը մշտապես ուղեկցվի նրանց գաղափարաբարոյական և կուլտուրական մակարդակի աճով, որպեսզի ժամանակին կանխվեն քաղքենիական, մանրբուրժուական հոգեբանության ռեցիդիվները։

Մեզ համար խորապես խորթ են սպառողականության հոգեբանությունը, իրապաշտության տենդը, քաղքենիական հղփացումը, որոնք ետին պլան են մղում սոցիալական, հոգևոր արժույթները։ «Մենք,— ասել է ընկեր Լ. Ի. Բրեժնեը,— մերժում ենք ինչպես աղքատության և ասկետիզմի քարոզը, այնպես էլ սպառման պաշտամունքը, քաղքենու հոգեբանությունը, որի համար կոպեկը, Գորկու դիպուկ արտահայտությամբ, իր երկնքի արևն է։ Մեզ համար նյութական բարիքները ոչ թե ինքնանպատակ են, այլ անհատի համակողմանի զարգացման նախադրյալ։ Ուստի կարևոր է, որ բարեկեցության բարձրացումն ուղեկցվի մարդկանց ներաշխարհի հարստացմամբ՝ կյանքի նպատակի և իմաստի ճիշտ ըմբռնման ձևավորմամբ»։

Ինչպես հայտնի է, Հայաստանի կոմկուսի նախորդ համագումարում խնդիր դրվեց անհաշտ և հետևողական պայքար մղել դրամաշորթության, հափշտակումների, կաշառակերության, օրինախախտումների, պաշտոնական դիրքի չարաշահման, տնտեսական հղփացման և սպառողականության քաղքենիական հոգեբանության դեմ։ Իրագործելով համագումարի հիմնադրույթները, հանրապետության կուսակցական, պետական, սովետական, հասարակական կազմակերպությունները հաշվետու ժամանակաշրջանում մեծ աշխատանք են տարել այդ երևույթների և դրանց կրողների դեմ պայքար կազմակերպելու ուղղությամբ։ Այդ ժամանակաշրջանում մերկացվել և քրեական ու պատասխանատվության այլ ձևերի են ենթարկվել մի ամբողջ շարք անձինք։

Պրակտիկան ցույց է տալիս, որ այդ պայքարը մեծ հաջողություն ունի այնտեղ, որտեղ դրա մեջ ներգրավվում են հասարակության լայն ուժեր, որտեղ այդ պայքարը հենվում է աշխատավորական կոլեկտիվների կոնկրետ գործնական աջակցության վրա։ Ուստի մենք պետք է այսուհետ ևս բացասական երևույթների դեմ անհաշտ, հետևողական պայքար մղենք՝ ներգրավելով աշխատավորական լայն մասսաների։ Մեր բարոյականությունը խախտողների նկատմամբ ամենուրեք պատժի անխուսափելիության, հասարակական դատապարտման, արհամարհանքի մթնոլորտ ստեղծելը բարոյական դաստիարակության ներգործունության կարևոր պայմանն է։ Կուսակցական կազմակերպությունները, մեր բոլոր կոմունիստները կոչված են այսուհետև էլ եռանդուն գլխավորելու պայքարը այն բոլոր բացասական երևույթների դեմ, որոնք հակասում են սովետական ապրելակերպի բուն էությանը։ Մեր խնդիրն է՝ այդ նպատակի համար լրիվ օգտագործել թե՛ աշխատավորական կոլեկտիվի կարծիքը, թե՛ մամուլի քննադատական խոսքը, թե՛ համոզելու մեթոդները, թե՛ օրենքի ուժը, մեր տրամադրության տակ եղած բոլոր միջոցները։

Ընկերնե՛ր։

Հանրապետության կուսակցական կազմակերպությունների աշխատանքում կարևոր տեղ են գրավել իրավապահպան մարմինների գործունեության բարելավման հարցերը՝ կուսակցության XXV համագումարի որոշումների, «Իրավակարգի պահպանության աշխատանքը բարելավելու և իրավախախտումների դեմ մղվող պայքարն ուժեղացնելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման լույսի ներքո։ Այդ հարցերը բազմիցս քննարկվել են Հայաստանի կոմկուսի Կենտկոմի, կուսակցության քաղկոմների ու շրջկոմների կողմից։

Ձեռնարկված միջոցները նպաստել են օրինականությունն ամրապնդելու, իրավակարգը պահպանելու, իրավախախտումների դեմ մղվող պայքարում հասարակայնությանը ներգրավելու ուղղությամբ այդ մարմինների աշխատանքի ակտիվացմանը։ Մշակվել և իրականացվում են անհրաժեշտ միջոցառումներ՝ դրանք արժանավոր և ստուգված կադրերով ամրապնդելու, վստահություն չներշնչող անձանցից ազատվելու համար։ Ընդհանրապես քիչ աշխատանք չի



կատարվել։ Բայց այդ ամենը գնահատելով ժամանակակից հարաճուն պահանջների տեսանկյունից և հաշվի առնելով առանձին տեղամասերում գործերի վիճակը, մենք պետք է նշենք հանրապետության իրավապահպան մարմինների աշխատանքում լուրջ թերությունների, վրիպումների, բացթողումների առկայությունը և ասենք, որ մի շարք միջոցառումների արդյունավետությունը դեռևս մեծ չէ, դրանց գործնական հատույցը այնքան էլ շոշափելի չէ։ Կան փաստեր, երբ վտանգավոր հանցագործությունները, այդ թվում նաև սոցիալիստական սեփականության հափշտակումները, չարդարացված դանդաղ են բացահայտվում, պասիվություն և ոչ օպերատիվություն է ցուցաբերվում հանցագործությունների կանխման ու կասեցման գործում։ Նույնիսկ կան հանցագործությունները հաշվառումից թաքցնելու դեպքեր, քաշքշուկ է նկատվում քաղաքացիների դիմումները քննարկելիս։ Մի խոսքով, թույլ են տրվում պատժի անխուսափելիության կարևորագույն սկզբունքի խախտման փաստեր։ Իսկ չէ՞ որ Վ. Ի. Լենինը քանիցս ընդգծել է, որ պատժի նախազգուշական նշանակությունը պայմանավորվում է դրա անխուսափելիությամբ։ Հարկավոր է նաև նշել, որ սովետական օրենքների, սովետական դատարանի դաստիարակչական ներգործությունը անբավարար են օգտագործվում այն երիտասարդների, մանավանդ անչափահասների նկատմամբ, ովքեր առաջին անգամ սայթաքել են կյանքում և կատարել իրավախախտումներ։

Տարբերակված աշխատանք և հարձակողական պայքար չի տարվում այնպիսի հակահասարակական երևույթների դեմ, ինչպիսիք են պորտաբուծությունը, խուլիգանությունը և հարբեցողությունը, որոնք սնուցիչ միջավայր են ստեղծում հանցագործությունների համար, հաճախ դառնում դրանց սկզբնապատճառը։

Հանրապետության ներքին գործերի մինիստրությունը (ընկ. Ե. Պատալով), դատախազությունը (ընկ. Ս. Օսիպյան), Գերագույն դատարանը (ընկ. Գ. Քոչարյան), արդարադատության մինիստրությունը (ընկ. Ա. Գևորգյան) պետք է ուժեղացնեն իրենց ենթակա մարմինների ղեկավարումը, առավել սկզբունքորեն և քննադատաբար գնահատեն նրանց աշխատանքի արդյունքները, բարձր պահանջկոտություն հանդես բերեն և գործնական օգնություն ցույց տան նրանց։ Հարկավոր է ամենայն խստությամբ պատժել իրավապահպան մարմինների այն աշխատողներին, ովքեր իրենք են հանցավոր արարքներ կատարում, խախտում օրենքները։

Իրավակարգի ամրապնդման աշխատանքում կարևոր պայմաններից մեկը իրավապահպան մարմինների գործողությունների միասնությունն է, նրանց գործունեության կոորդինացումը։ Այս իմաստով լուրջ աշխատանք պետք է կատարի հանրապետության դատախազությունը։

Անհրաժեշտ է, որ կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները բարձրացնեն տեղերում իրավապահպան մարմինների աշխատանքի կուսակցական ղեկավարման մակարդակը, առավել խորամուխ լինեն նրանց գործունեության մեջ, բարձրացնեն այդ մարմինների կուսակցական կազմակերպությունների պատասխանատվությունը աշխատողներին ծառայողական պարտքի անբասիր կատարման ոգով դաստիարակելու համար, վճռականորեն ազատվեն այն անձանցից, ովքեր իրենց անվայել վարքագծով վարկաբեկում են այդ մարմինների աշխատողի բարձր կոչումը։

Ընկերնե՛ր։

Դժվար է գերագնահատել գաղափարաքաղաքական և բարոյական դաստիարակության դերը մեր առաջընթաց շարժման, սովետական հասարակության անշեղ պրոգրեսի մեջ։ Հիանալի է ասել ընկ. Լ. Ի. Բրեժնևն իրեն Լենինյան մրցանակ հանձնելիս արտասանած ճառում՝ «Մխրճվել պրակտիկ կյանքի մեջ, օգնել ժողովրդին ավելի պարզորոշ հասկանալու այդ կյանքի իմաստը և նրա հոսանքի ուղղությունը, օգնել այդ կյանքը դարձնելու ավելի լավ, ավելի հարուստ ոչ միայն նյութապես, այլև հոգևոր տեսակետից՝ ի՞նչը կարող է ավելի կարևոր և ավելի ազնիվ լինել։ Կուսակցությունը այսպիսի չափանիշով է մոտենում գաղափարախոսական աշխատանքի բոլոր ձևերին»։ (Ծափահարություններ):

նվազագույն թուլացումը հանգեցնում է կարգապահության այս կամ այն խախտման, հետևապես նաև վնասում գործին:

Ուստի, Հայաստանի կոմկուսի համագումարը պետք է հանրապետության կուսկազմակերպության առջև խնդիր դնի՝ այսուհետ ևս շարունակել կուսակցական ու պետական կարգապահությունն ըստ ամենայնի ամենուրեք ամրապնդելու հաստատուն կուրսը, հասնել այն բանին, որ ամենուրեք, կուսակցական, պետական և տնտեսական ղեկավարման բոլոր օղակներում, աշխատանքի բոլոր տեղամասերում տիրի մարդկանց բարձր գիտակցականության և պատասխանատվության վրա հիմնված ամուր կարգապահության մթնոլորտ, որ կուսակցական ու պետական կարգապահության ամրապնդման աշխատանքը տարվի անընդմեջ, դիտվի որպես մշտական գործոն կուսկոմիտեների և կազմակերպությունների, պետական ու տնտեսական մարմինների, հասարակական կազմակերպությունների քաղաքական և կազմակերպական գործունեության մեջ, որ ամենուրեք տիրի կարգապահության անշեղ կիրառման համար խստագույն պահանջկոտության մթնոլորտ:

Միայն կուսակցական բարձր պահանջկոտությունն է նպաստում կադրերի պատասխանատվության բարձրացմանը, նոմինալ պատասխանատվությունը վերածում իրական, կադրերի դաստիարակությանը նպաստող պատասխանատվության:

Այնտեղ, ուր բացակայում է խստապահանջությունը, երևան են գալիս անպատասխանատվությունը, անկարգապահությունը, խախտումները և բացասական այլ երևույթներ:

Հենց կուսակցության Նոյեմբերյանի շրջկոմի ցածր պահանջկոտության պայմաններում հնարավոր դարձավ շրջգործկոմի նախագահի կողմից պաշտոնական դիրքի չարաշահումը: Կուսակցության Գորիսի շրջկոմի վերահսկողության և պահանջկոտության բացակայությամբ է բացատրվում այն փաստը, որ միկրոշարժիչների գործարանի դիրեկտորը, կուսակցության շրջանային կոմիտեի անդամը կատարեց հանցավոր արարքներ, որի համար դատապարտվեց: «Հայջրշինի» ղեկավարության անպահանջկոտությունը հանգեցրեց «Հայջրինդուստրիա» արտադրամիավորումում ֆինանսական ու պետական կարգապահության կոպիտ խախտումների: Ցավոք, նման օրինակներ կարելի է շատ բերել:

Պրակտիկան ապացուցում է, որ որքան մեծ է օբյեկտիվ և ակտիվ պահանջկոտությունը, այնքան քիչ են կադրերի կորուստները, այնքան ավելի կայուն է նրանց կազմը, ավելի արդյունավետ՝ գործունեությունը:

Կուսակցական կոմիտեները և կազմակերպությունները պետք է հասնեն հետևողական և մշտական պահանջկոտության: Դա պետք է դառնա ղեկավար կադրերի գործունեության օրգանական բաղկացուցիչ մասը:

Գործիմաց, կոնկրետ ու տեղին պահանջկոտությունը միայն կարող է լինել բարձր, ներգործուն, տալ դրական արդյունք:

Գործը չիմացող, անիրազեկ ղեկավարը չի կարող ինչպես հարկն է պահանջկոտ լինել, քանի որ պահանջելու համար նախ և առաջ հարկավոր է լավ իմանալ, թե ինչ պետք է պահանջել, ումից պետք է պահանջել, երբ պետք է պահանջել:

Մյուս կողմից, պահանջկոտությունը պետք է միշտ զուգակցվի կոնկրետ օգնության հետ, գործն ավելի լավ անելու խորհուրդների, կուսակցական բարի խրատների հետ:

Մշտական ուժեղացման և կատարելագործման կարիք ունի ընդունված որոշումների կատարումը վերահսկելու և ստուգելու գործը:

Հաշվետու ժամանակաշրջանում Հայաստանի կոմկուսի Կենտկոմը կանոնավոր կերպով քննության է առել ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի մի շարք որոշումների կատարման ընթացքը, կոնկրետ միջոցներ ձեռնարկելով այդ գործում ի հայտ բերված թերությունները վերացնելու համար: Միաժամանակ Կենտկոմի ուշադրության կենտրոնում են մշտապես եղել իր որոշումների կատարման հետ կապված հարցերը:

Պետք է ասել, սակայն, որ վերահսկողական աշխատանքի կազմակերպման գործում դեռ քիչ չեն թերությունները, ձևական մոտեցման տարրերը:



Կուսակցական, սովետական, տնտեսական մի շարք մարմիններ (Ապարանի, Ազիզբեկովի, Թալինի շրջկոմները, ավտոտրանսպորտի, մթերումների, սննդի ու տեղական արդյունաբերության մինիստրությունները, անտառային տնտեսության պետական կոմիտեն, Իջևանի, Շամշադինի, Գուգարքի, Մասիսի շրջգործկոմները և այլն) դեռ չեն հասել այն բանին, որ այդ աշխատանքը կատարվի սիստեմատիկաբար, բազմակողմանիորեն, սկզբունքային բնույթ կրի, կենտրոնացվի հրատապ հարցերի վրա: Կատարման ստուգումը հաճախ անցկացվում է ոչ ժամանակին, մեծ ուշացումով, քիչ է օգնում գործերի վիճակի շտկմանը և միայն գրանցում է ձախողումներն ու թերությունները: Միշտ չէ, որ խիստ, սկզբունքային գնահատական է տրվում կատարողական կարգապահության խախտման, ընդունված որոշումների կատարման գործում ուղղակի քաշքշուկի առանձին փաստերին: Ընդունված որոշումները ժամանակին չկատարելը ծնում է նոր պրոբլեմներ, է՛լ ավելի է բարդացնում նախատեսված միջոցառումների իրականացումը և ի վերջո հանգեցնում է միևնույն հարցի վերաբերյալ նոր որոշումների ընդունման: Հարկավոր է վճռականորեն վերջ դնել այդ պրակտիկային:

Անհրաժեշտ է նաև նշել, որ վերահսկողությունը միշտ չի զուգակցվում կոնկրետ օգնության հետ: Եթե վերադաս մարմնի այս կամ այն որոշումը իրականացնելիս տեղերում ծագում են լրացուցիչ հարցեր, ապա պետք է դրանք ժամանակին լուծել:

Լենինյան ըմբռնմամբ վերահսկողության գլխավոր իմաստը որոշման և կատարման միասնության ապահովումն է, հնարավոր սխալների ու թերությունների կանխումը, դրանք ժամանակին շտկելու, գործնականորեն, թեկուզ փոքր չափով, բայց ռեալ օգնություն ցույց տալու կարողությունը:

Վերն ասածից հետևում է, որ կուսակցական կազմակերպությունները պետք է ըստ ամենայնի ամրապնդեն կատարողական կարգապահությունը, է՛լ ավելի կատարելագործեն վերահսկողական աշխատանքի բովանդակությունը, ձևերն ու մեթոդները, ուժեղացնեն վերահսկիչ մարմինների գործունեության, ինչպես նաև կատարման ստուգման գործում հանրապետության պետական կառավարման մարմինների աշխատանքի կուսակցական ղեկավարումը և բարձրացնեն դրա որակը:

Ընկերնե՛ր:

Մեր ամբողջ գործունեության արմատական հարցը կադրերի հետ տարվող աշխատանքն է:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը հաշվետու ժամանակաշրջանում մշտապես իր ուշադրության կենտրոնում է պահել կադրային քաղաքականության և կադրերի հետ տարվող աշխատանքի բոլոր կարևոր կողմերը:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, կուսակցության քաղկոմները, շրջկոմները զգալի աշխատանք են կատարել կադրերի ընտրությունը, տեղաբաշխումը և դաստիարակությունը բարելավելու, կուսակցական, պետական, սովետական ապարատը, տնտեսական մարմինները, ժողովրդական տնտեսության տարբեր տեղամասերը, հասարակական կազմակերպություններն այնպիսի աշխատողներով ամրապնդելու նպատակով, որոնք ունեն մասնագիտական խոր գիտելիքներ, քաղաքական ու կազմակերպչական աշխատանքի փորձ, հեղինակություն և վստահություն են վայելում աշխատավորության շրջանում:

Կուսակցության մեջ տիրող ընդհանուր մթնոլորտի անմիջական ազդեցությամբ, ինչպես նաև նպատակասլաց կադրային աշխատանքի շնորհիվ հանրապետության կուսակցական կազմակերպությունում, ժողովրդական տնտեսության, գիտության, կուլտուրայի բոլոր բնագավառներում և մեր կենսագործունեության մյուս օղակներում հաստատվել է բարոյաքաղաքական և բարոյահոգեբանական առողջ մթնոլորտ, երբ ցանկացած ճյուղի կադրային աշխատողի գնահատականը տրվում է միայն ու միայն լենինյան սկզբունքներից ելնելով, այն է՝ ըստ նրա քաղաքական, բարոյական և գործնական հատկանիշների, նրա աշխատանքի կոնկրետ արդյունքների:

Վստահություն, հոգատար վերաբերմունք կադրերի նկատմամբ՝ զուգակցված սկզբունքային խստապահանջության հետ — կուսակցության XXV հա-

մագումարի այս հիմնադրույթներն են դրվել Կենտկոմի կադրային աշխատանքի հիմքում:

Կենտկոմը տեսնում է նաև այդ աշխատանքում տեղ գտած թերությունները և վրիպումները: Մենք, իհարկե, չենք կարող ասել, թե ամբողջովին լուծել ենք կադրերի հետ տարվող աշխատանքի բոլոր հարցերը: Բայց համագումարին կարող ենք հաստատապես զեկուցել, որ հանրապետության կուսակցական կազմակերպությունում վերացվել են և այլևս չկան այն նախադրյալները, այն մթնոլորտը, որոնք մի ժամանակ կադրային աշխատանքում ծնում էին արատավոր անցանկալի երևույթներ, որոնք այնքան բացասաբար անդրադարձան կադրերի դաստիարակության ու կերպավորման վրա, մեր գործերի վրա:

Մեր լավագույն կադրերն իրենց ծանրակշիռ ավանդն են ներդրել հանրապետության լուրջ հաջողություններում և նվաճումներում: Եվ այսօր մենք կարող ենք լիակատար վստահություն հայտնել, որ նրանք, որպես կուսակցության հավատարիմ զինվորներ, կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ այսուհետ ևս կանգնած կլինեն ՍՄԿԿ քաղաքականության կենսագործման համար մղվող պայքարի առաջավոր գծում: (Ծափահարություններ):

Ընկերնե՛ր:

Մենք պետք է կադրերին դաստիարակենք հանձնարարված գործի համար կուսակցության և ժողովրդի հանդեպ պատասխանատվության այնպիսի բարձր զգացումով, օժտենք կուսակցականության և պետականության այնպիսի հատկանիշներով, որպեսզի նրանք չդադարեն աճել, մշտապես լրացնեն ու կատարելագործեն գիտելիքները, լինեն ավելի գործիմաց, ավելի խորությամբ տիրապետեն կառավարման ժամանակակից գիտությանը, ղեկավարման արվեստին, կարողանան տեսնել և իմաստավորել հասարակական-քաղաքական կյանքում և արտադրության ոլորտում կատարվող արագ ու խոր փոփոխությունները, տեսնեն հեռանկարը, հանձնարարված գործը կատարեն կյանքի հարաճուն պահանջների մակարդակով:

Իրենց առջև դրված տնտեսական-քաղաքական խնդիրների լուծման գործում առավել նկատելի հաջողությունների հասած կուսակցական կազմակերպությունների աշխատանքի պրակտիկան, որոնց մասին արդեն խոսվեց, վկայում է, որ հաջողության են հասնում նրանք, ովքեր ակտիվորեն և կոնկրետ են զբաղվում էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման պրոբլեմներով ու հեռանկարներով, աշխատանքի ոճի և մեթոդների կատարելագործման հարցերով, ովքեր վստահորեն են գործի կպչում, բարձրացնում են կարգապահությունը և կազմակերպվածությունը, հանդես են բերում նախաձեռնություն և ասպարեզ են տալիս նախաձեռնությանը, ստեղծագործական որոնմանը, համարձակորեն են արմատավորում նորը, տեսնում են աշխատանքի թերություններ ծնող թույլ ու խոցելի տեղերը և վճռականապես պայքարում են դրանց վերացման համար՝ այդ ամենը ամրապնդելով կազմակերպչական, նպատակասլաց և կոնկրետ դաստիարակչական մեծ աշխատանքով:

Հրազդանի կուսակցական կազմակերպության (շրջկոմի քարտուղար՝ ընկ. Մ. Հարությունյան) աշխատանքի հենց նման ոճը պայմանավորեց շրջանի մեծ հաջողությունները տնտեսական, սոցիալական և կուլտուրական զարգացման խնդիրների լուծման գործում:

Մի խոսքով, հաջողությունը նրանց հետ է, ովքեր, կառավարելով կյանքը, մշտապես հանդիսանում են նրա արժանավոր աշակերտը:

Իսկ այնտեղ, որտեղ ձեռքները ծալած սպասում են բոլոր հարցերի վերաբերյալ վերևից ստացվող ցուցումների, ընդ որում բավարարվում են ինչ-որ ժամանակ ձեռք բերածով, հաջողություն մի սպասիր, այնտեղ լավագույն դեպքում կարելի է միայն դոփել տեղում:

Այսպես էր աշխատում Մեղրու կուսշրջկոմի նախկին առաջին քարտուղար ընկ. Յու. Առաքելյանը: Նա չկարողացավ ձեռք բերել կուսակցական աշխատողին, շրջանի քաղաքական ղեկավարին անհրաժեշտ հատկանիշներ և անկարող եղավ որոշելու շրջանի էկոնոմիկայի հանգուցային հարցերն ու զարգացման ուղիները, ուժ չգտավ համախմբելու ակտիվը շրջկոմի կազմակերպչական ու քաղաքական աշխատանքի ծավալման միջոցով աշխատավորական կոլեկտիվ-



ներին մոբիլիզացնելու պետական առաջադրանքների անվերապահ կատարման համար:

Քաղաքական ղեկավարի աստիճանի քննություն չբռնեցին Մարտունու կուսշրջկոմի նախկին առաջին քարտուղար ընկ. Ջ. Պողոսյանը, Արթիկի կուսշրջկոմի նախկին առաջին քարտուղար ընկ. Թ. Սարոյանը և ուրիշ ընկերներ, որոնց Հայաստանի կոմկուսի Կենտկոմը փոխադրեց այլ աշխատանքի:

Արդարացի քննադատության է արժանի Արագածի կուսշրջկոմի աշխատանքի ոճը: Շրջանն ակնհայտորեն նկատելի հաջողություններ կունենար, եթե կուսշրջկոմը և նրա առաջին քարտուղար ընկ. Թ. Մելքոնյանը աշխատանքի հնացած ոճի ու մեթոդների հետևորդներ չլինեին, ավելի շատ նախաձեռնություն դրսևորեին շրջանի առջև ծառացած հարցերի լուծման գործում: Իսկ այստեղից էլ ծայր են առնում բոլոր թերությունները, ղեկավարման և շրջկոմի աշխատանքի ցածր արդյունավետությունը:

Նման քննադատություն կարելի է հասցեագրել նաև Գորիսի (ընկ. Ա. Հարությունյան), Սևանի (ընկ. Ս. Զաքարյան), Ապարանի (ընկ. Բ. Անդրեասյան) և մի քանի այլ շրջանների կուսակցական կոմիտեներին, որտեղ ղեկավարման արդյունավետությունը դեռ ցածր է:

Խոսելով կադրային աշխատանքի թերությունների մասին՝ մենք պետք է նշենք, որ մի շարք կուսակցական ու պետական մարմիններում, էկոնոմիկայի, գիտության և կուլտուրայի տարբեր ճյուղերում մշտապես և կոնկրետ չեն վերլուծվում կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության, կադրերի կայուն ռեզերվի ստեղծման աշխատանքի վիճակը, մակարդակը և նպատակասլացությունը: Պետք է ասել, որ հենց դա է շատ թերությունների, մանավանդ խրոնիկական բնույթ ստացած թերությունների, առկայության պատճառը:

Վաղուց արդեն հանրապետության էկոնոմիկայում նեղ տեղ է դարձել շինարարությունը: Հայտնի է, որ այստեղ շատ թերություններ իրենց բնույթով հար ու նման են, տարածված են շատ տեղամասերում և դրանց կոնկրետ կրողները միանգամայն կոնկրետ աշխատողներ են: Դա պահանջում էր, որ շինարարության գործերի բարելավման ընդհանուր միջոցառումների մեջ հատուկ տեղ հատկացվեր կադրային աշխատանքին, դրա վիճակի մանրամասն ուսումնասիրմանը և տևական ժամանակի համար նախատեսված աշխատանքի մի ամբողջ ծրագրի, այո, հենց ծրագրի ստեղծմանը: Ցավոք, կադրային այսպիսի մտածված աշխատանք չի կատարվել:

Գործերի անբարեհաջող վիճակի համար Կենտրոնական կոմիտեն կուսակցական պատասխանատվության ենթարկեց և նպատակահարմար գտավ պաշտոնից ազատել արդյունաբերական շինարարության մինիստր ընկ. Կ. Հակոբյանին: Բայց դրանից հետո կուսակցական կոմիտեներն ինչպես հարկն է չկազմակերպեցին տարբերակված կադրային աշխատանք մինիստրության ամբողջ համակարգում: Իսկ դա շատ անհրաժեշտ է: Ըստ երևույթին, դա տեղի է ունենում այն պատճառով, որ դեռևս տարածված է այն տարօրինակ միակողմանի մտայնությունը, որ երբ խոսվում է կադրերի և նրանց հետ տարվող աշխատանքի մասին, ապա նկատի են առնվում առաջին ղեկավարը և լավագույն դեպքում՝ նրա տեղակալները: Իհարկե, չի կարելի ժխտել նրանց առաջատար դերը, բայց սահմանափակվել միայն դրանով՝ նշանակում է թույլ տալ կոպիտ, վտանգով հղի սխալ: Գուցե դա է պատճառը, որ այդ մինիստրությունում այնպես է ստացվում, որ մինիստրի փոփոխումը չի հանգեցնում արմատացած հիմնական թերությունների վերացմանը, ուրեմն և գործերի վիճակի արագ բարելավմանը, քանի որ կուսակցական կազմակերպությունները և կոմիտեները չեն զբաղվում կադրային աշխատանքի ամբողջ կոմպլեքսով, բոլոր անմիջական մեղավորներին պատասխանատվության չեն ենթարկում գործերի անբավարար վիճակի համար: Իսկ չէ՞ որ նրանց մեջ քիչ չեն նոմենկլատուրային աշխատողները:

Անհրաժեշտ է դեռ շատ բան անել կադրերի ռեզերվ ստեղծելու, աշխատանքը բարելավելու, ինչպես նաև կանանց ղեկավար աշխատանքի առաջ քաշելու ուղղությամբ:

Կուսակցական կամ այլ ղեկավար մարմնի համար կադրերի ակտիվ ռեզերվ ունենալը առհավատչյան է այն բանի, որ կադրային աշխատանքում եղած թերությունները կհասցվեն նվազագույնի, հնարավորություն կստեղծվի, գործի շահերից ելնելով, հմտորեն և օպերատիվ կերպով մանևրելու աշխատողներով։

Այս ամենի հետ սերտորեն առնչված է նաև մի ուրիշ, ոչ պակաս կարևոր հարց, որը մեր աշխատանքի մասշտաբների ընդլայնման համեմատ ավելի ու ավելի մեծ նշանակություն կստանա։ Նկատի ունենք միջին օղակի կադրերի հետ տարվող աշխատանքի զգալի բարելավման և ուժեղացման անհրաժեշտությունը։ Դա պատասխանատու աշխատողների ամենամեծաթիվ կատեգորիան է։ Նրանք բոլորից մոտ են կանգնած արտադրությանը, այն տեղամասերին, որտեղ փաստորեն վճռվում է մեր պլանների բախտը։ Նրանք են անմիջականորեն կազմակերպում մարդկանց աշխատանքը, ամենօրյա ազդեցություն ունենում նրանց դաստիարակության վրա։ Կուսակցական կազմակերպությունները և կոմիտեները, մինիստրությունները և գերատեսչությունները պետք է շատ լուրջ ուշադրություն դարձնեն միջին օղակի աշխատողներին՝ որպես կադրային աշխատանքի կարևոր տեղամասի։

Կադրային քաղաքականության մեջ կարևոր գործոն է համապատասխան կուսակցական մարմինների կողմից կադրերի նոմենկլատուրայի ճիշտ որոշումը և նոմենկլատուրային կարգապահության խստիվ կիրառումը։ Դրանով են, փաստորեն, իրականացվում կադրերի տեղաբաշխումը առավել կարևոր տեղամասերում, կադրերի հետ կապված բոլոր հարցերի վերլուծությունը, նրանց ընտրության ու տեղաբաշխման գործը և այլն։

Այսօր ուզում ենք ուշադրություն հրավիրել հենց նոմենկլատուրային աշխատողի պատասխանատվության և կարգապահության վրա։ Չէ՞ որ կուսակցական մարմինը նոմենկլատուրային ղեկավար աշխատողներին հաստատում է ոչ միայն որպես գործունեության տվյալ բնագավառի մասնագետների, այլ, և ամենից առաջ, որպես աշխատանքի տվյալ տեղամասում կուսակցության քաղաքականությունն իրականացնողների, նկատի ունենալով նրանց քաղաքական հատկանիշները, մարդկանց դաստիարակության հետ գործի կազմակերպումը սերտորեն շաղկապելու նրանց ունակությունները։

Ելնելով այս ամենից, մենք պետք է համագումարում պարզորոշ ասենք, որ կուսակցական մարմնի կողմից նոմենկլատուրային աշխատողի հաստատումը նշանակում է, որ նրա վրա պատասխանատվություն է դրվում նաև գործունեության դաստիարակչական և սոցիալ-քաղաքական կողմերի համար, իրենց ղեկավարած աշխատավորական կոլեկտիվում քաղաքական ու բարոյահոգեբանական մթնոլորտի և կոմունիստական կուսակցության քաղաքականության իրականացման նպատակով կոլեկտիվի մոբիլիզացման համար։ Այս ճշմարտությունը համագումարում հիշատակվում է այն բանի համար, որպեսզի բոլոր աշխատողները միակերպ ըմբռնեն նոմենկլատուրային կարգապահության հարցը։ Այս պահանջը պետք է իրականացվի մշտապես և ամենուրեք, այն պետք է դառնա կարևոր գործոն տնտեսական, գիտական, գաղափարախոսական, ստեղծագործական և մյուս կազմակերպությունները գլխավորող աշխատողների գործունեությունը գնահատելիս, որոնց կուսակցությունը վստահում է իր ներկայացուցիչը լինել տվյալ կազմակերպությունում և վարել կուսակցության քաղաքականությունը։

Մյուս կողմից, կուսակցական կոմիտեները պետք է հաշվի առնեն, որ աշխատանքի այս կամ այն տեղամասում աշխատողի առաջքաշմամբ, յուրաքանչյուր նոր նշանակմամբ սկսվում է նրա դաստիարակության մի նոր փուլ։

Կադրերի դաստիարակության անփոխարինելի միջոց են սկզբունքային քննադատությունն ու ինքնաքննադատությունը։

Ինքնաքննադատությունը հատկապես կարևոր է ղեկավար կադրերին աշխատանքում՝ սեփական գործունեությունը ճիշտ գնահատելու համար։ Առաջին հերթին հենց նրանցից են կախված սկզբունքայնությունը հարցերի առաջադրման գործում, ներքևից եկող անկեղծ քննադատության համար պայմանների ստեղծումը, ելույթների առթիվ ձեռնարկվող միջոցների արդյունավետությունը։ «Կուսակցական ղեկավար չի կարող լինել նա, ով կորցնում է իր գործունեությունը քննադատաբար գնահատելու ունակությունը, կտրվել է մասսաներից, լույս աշխարհ է բերում շողոքորթներ և քծնողներ, ով կորցրել է կոմունիստների վստահությունը»,— շեշտված է XXV համագումարում ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ։

Այնտեղ, ուր թուլանում են քննադատությունն ու ինքնաքննադատությունը, պարարտ հող են գտնում այնպիսի բացասական երևույթներ, ինչպիսին են՝ մեծամտությունը, հաճոյակատարությունը, պաշտպանողականությունը, ամեն տեսակի չարաշահումները։

Հայտնի է, որ Հայաստանի կոմկուսի XXVI համագումարում և դրա նախօրեին մեզ մոտ հանգամանորեն վերլուծվեցին հանրապետությունում կուսակցական ղեկավարման մեջ շատ ղեկավար աշխատողների կատարած սկզբունքային սխալները, որոնք հանգեցրել էին բացահայտ բացասական հետևանքների։ Կուսակցական այդ խիստ և օբյեկտիվ քննադատությունը տվեց իր դրական արդյունքները ինչպես հենց կադրերի համար, այնպես էլ հանրապետության կուսակցական կազմակերպության կողմից աչքի ընկնող հաջողություններ ձեռք բերելու գործում։ Այս բանը մենք գոհունակությամբ կարող ենք շեշտել համագումարում։ Նույնպիսի գոհունակությամբ կարող ենք ասել, որ քննադատված թերությունները հաղթահարելու նպատակով հաշվետու ժամանակաշրջանում կատարված ողջ աշխատանքը, դրա դրական արդյունքները վկայում են մեր կուսակցական կազմակերպության քաղաքական հասունությունը, նրա մարտունակությունը։ (Ծափահարություններ)։

Քննադատության ու ինքնաքննադատության ծավալման համար կարևոր նշանակություն ունի Կենտկոմի, շրջկոմների և քաղկոմների, սկզբնական կուսկազմակերպությունների, մինիստրությունների և գերատեսչությունների հասցեին արված քննադատական դիտողությունների և առաջարկությունների հաշվառման ու իրականացման պրակտիկան, որը վերջին տարիներս արմատավորվել է մեզանում։

Առաջարկությունների և քննադատական դիտողությունների իրականացումը վերահսկելու կարևոր ձևերից մեկը դարձել է այդ գործի ընթացքի քննարկումը Կենտկոմում, կուսակցության քաղկոմներում և շրջկոմներում։

Եվ, այնուամենայնիվ, այսօր մենք չենք կարող ասել, թե կուսակցական բոլոր կոմիտեներում և կազմակերպություններում, պետական ու տնտեսական ապարատի բոլոր օղակներում սկզբունքային մոտեցում է հաստատվել քննադատության և ինքնաքննադատության նկատմամբ։

Դեռևս կան դեպքեր, երբ քննադատության ճնշման համար մեղավոր անձինք ժամանակին չեն ենթարկվում կուսակցական խիստ պատասխանատվության։

Քննադատության ծավալմանը, կադրերի դաստիարակությանը, հավասարապես նաև գործին լուրջ վնաս է հասցվում նրանով, որ երբեմն մեղանչած ղեկավարներն իրենց կուսակցական կազմակերպություններում, աշխատավորական կոլեկտիվներում զերծ են մնում քննադատությունից, իսկ նրանց թերացումները և զանցանքները քննարկվում են միայն վերադաս մարմիններում։ Այս թերությունը պետք է վճռականապես վերացնել։

Կյանքը բազմիցս հաստատել է, որ առողջ քննադատությունից ղեկավարին զերծ պահել՝ նշանակում է նրան մատնել ինքնագոհության, նրա մեջ մարել իր աշխատանքի արդյունքների, իր վարքի քննադատական իմաստավորման զգացումը։

Կուսակցական կազմակերպությունները և կոմիտեները պետք է այսուհետև էլ ժամանակին և կոնկրետ արձագանքեն ցանկացած ստորճանի աշխատողի հասցեին արվող քննադատական յուրաքանչյուր դիտողության, որը վերաբե-

ները, կնախատեսի դրանց վերացման ուղիները, կասհմանի կուսակցական աշխատանքի հետագա բարելավման խնդիրները, հանրապետության տնտեսական և սոցիալական զարգացման նոր բնագծերը: Տարակույս չկա, որ համագումարի պատգամավորները հաշվետու զեկուցումը կքննարկեն սկզբունքային գործարարությամբ, հանրապետության կուսակցական կազմակերպության առաջիկա գործերի համար իրենց բարձր պատասխանատվության զգացումով:

Համագումարի հաջող աշխատանքը, նրա ընդունած որոշումները յուրաքանչյուր կոմունիստի, հանրապետության ամեն մի աշխատավորի նոր լիցք կհաղորդեն տասնմեկերորդ հնգամյակի լավ մեկնարկի համար:

Մեր համագումարը կհավաստի հանրապետության կուսակցական կազմակերպության, բոլոր աշխատավորների պատրաստակամությունը՝ կատարելու հարազատ լենինյան կուսակցության առաջիկա XXVI համագումարի նոր ստեղծարար ծրագիրը, նոր կանխագծումները:

Մեր համագումարը մեկ անգամ ևս կհավաստի Սովետական Հայաստանի կոմունիստների, բոլոր աշխատավորների, ժողովրդի կուռ համախմբվածությունը Սովետական Միության կոմունիստական կուսակցության, ՍՄԿԿ Կենտկոմի, նրա քաղբյուրոյի շուրջը, որը գլխավորում է Լենինի մեծ գործի ականավոր շարունակող, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևը:

Կեցցե՛ Սովետական Միության կոմունիստական մեծ կուսակցությունը, որը սովետական ժողովրդին լենինյան ուղիով վստահորեն առաջնորդում է դեպի կոմունիզմ: (Բուռն, երկարատև ծափահարություններ: Բոլորը ոտքի են կանգնում):

---



# ՀԱՅՐԵՆԱՍԻՐԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆԸ՝ ՄՇՏԱԿԱՆ ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ

**Գ. Ք. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ**
Պատմական գիտությունների թեկնածու,
պաշտոնատի գնդապետ

*Սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով աշխատավորների դաստիարակությունը կոմունիստական կուսակցությունը համարում է իր բազմակողմանի գործունեության կարևորագույն բնագավառներից մեկը: «...Կուսակցությունը,— ասել է Լ. Ի. Բրեժնևը,— մեծ նշանակություն է տալիս Սովետական Միության բոլոր քաղաքացիներին մշտապես, սիստեմատիկորեն և խորապես ինտերնացիոնալիզմի ու սովետական հայրենասիրության ոգով դաստիարակելու գործին: Այս երկու հասկացությունները մեզ համար անխզելի ամբողջություն են ներկայացնում: Անշուշտ, սովետական աշխատավորներին դրանցով դաստիարակում են բուն սովետական կյանքը, մեր ամբողջ իրականությունը: Բայց այստեղ անհրաժեշտ են նաև կուսակցության, քաղաքական-գաղափարական ճակատի բոլոր աշխատողների գիտակցական ջանքերը: Այս ասպարեզում տարվող մեր աշխատանքը կոմունիզմի կառուցման ընդհանուր գործի խիստ կարևոր մասն է» (Լ. Ի. Բրեժնև, Լենինյան կուրսով, հ. 4, էջ 86—87):*

*Հետևելով լենինյան պատգամներին՝ ՍՄԿԿ-ն վիթխարի աշխատանք է կատարել սովետական մարդկանց գաղափարապես կոփելու, կոմունիզմի համար պայքարող բոցաշունչ մարտիկների ամբողջ սերունդներ դաստիարակելու գործում: Աշխատավորների քաղաքական դաստիարակության, կոմունիստական շինարարությանը բազմամիլիոն մասսաների գիտակցական մասնակցությունն ապահովելու ասպարեզում կոմունիստական կուսակցության ձեռք բերած հաջողությունները այն գլխավոր գործոնն են, որ պայմանավորեցին մեր երկրի սոցիալ-տնտեսական և կուլտուրական զարգացման հաջողությունները, նրա պաշտպանական հզորության ամրապնդումը:*

*Աշխատավորների հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակության գործում կարևոր դեր խաղաց ՍՄԿԿ XXV համագումարը, որը մշակեց մասսաների կոմունիստական դաստիարակության խորապես գիտական, համակողմանիորեն հիմնավորված ծրագիր: Աշխատավորներին, առաջին հերթին երիտասարդ սերնդին, հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, սովետների երկրի համար հպարտության, սոցիալիզմի նվաճումների պաշտպանության պատրաստակամության ոգով դաստիարակելը եղել և մնում է կուսակցության կարևոր խնդիրը:*

*Մասսաների հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակության վերաբերյալ մարքս-լենինյան տեսության պրոբլեմների գիտական մշակման գործում խոշոր ներդրում են Լ. Ի. Բրեժնևի «Աշխատավորների կոմունիստական դաստիարակության մասին», «ՍՄԿԿ գաղափարախոսական աշխատանքի հրատապ հարցերը» և «Սովետական պետության արտաքին քաղաքականության մասին» աշխատությունները, «Մալայա զեմլյա», «Վերածնունդ», «Խոպան» հուշագրությունները, որոնք հսկայական բարերար ազդեցություն են գործում*

նը և ուրիշներ։ Նրանք համագյուղացիներին են հաղորդում իրենց կենսափորձը, խոսքով և գործով օգնում նրանց առօրյա կյանքում ու աշխատանքում։ Հայրենական պատերազմի տարիներին լեռնային այս գյուղից 130 մարդ մեկնեց ռազմաճակատ, նրանցից 36-ն ընկան խիզախի մահով։ Նրանց անունները փորագրվել են վարդագույն տուֆից կերտված գեղեցիկ հուշարձանին, որը կառուցել են համագյուղացիներն իրենց միջոցներով։ Ուշագրավ է մարտական և աշխատանքային փառքի սենյակը։ Գյուղի մշակույթի տանն առնթեր գործում է հայրենասիրական դաստիարակության դպրոց։ Այստեղ կազմակերպվում են դասախոսություններ, զեկուցումներ ու զրույցներ, հուշ երեկոներ և այլ միջոցառումներ։

Սովխոզի կուսկազմակերպությունը հատուկ ուշադրություն է նվիրում աշխատավորների համար կազմակերպվող քաղաքական միջոցառումների մակարդակի բարձրացմանը, ձգտում է դրանց մասնակից դարձնել ավելի շատ մարդկանց։Իրենց փառավոր ավանդույթներով մարտունեցիները դաստիարակում են երիտասարդությանը։ Ակտիվ և նպատակային դաստիարակչական աշխատանքը նպաստում է տնտեսական խնդիրների լուծմանը։ Սովխոզը տարեցտարի ավելացնում է գյուղատնտեսական մթերքների արտադրությունը, հասնում բարձր արդյունքների։ Այդ առումով հատկապես բեղմնավոր էին տասներորդ հնգամյակի տարիները։ Այսպիսի օրինակները շատ են մեր իրականությունում։

Ամեն տարի կենսագործունեության տարբեր ոլորտներ են ներգրավվում կյանքի և աշխատանքային բավարար փորձ չունեցող տասնյակ հազարավոր երիտասարդներ, որոնք մշտական ուշադրության, հոգատարության և դաստիարակության կարիք են զգում։ Նրանց գաղափարապես կոփելու, սովետական հայրենասիրությամբ և սոցիալիստական ինտերնացիոնալիզմով տոգորելու, ակտիվ կենսադիրքորոշման ոգով դաստիարակելու հարցերը պետք է մշտապես ամեն կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում։ Այդ առումով ուսանելի է Երևանի Կ. Մարքսի անվան պոլիտեխնիկական ինստիտուտի ռեկտորատի և կուսկոմիտեի փորձը։ Ինստիտուտում գործում է հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակության ակումբ, որը սեկցիաներ ունի ֆակուլտետներում։ Ակումբի աշխատանքը տարվում է ռեկտորատի և կուսկոմիտեի մշակած պլանին համապատասխան։ Ակումբի աշխատանքին ակտիվորեն մասնակցում են պատերազմի վետերաններն ու դասախոսապրոֆեսորական կազմը։

Սովետական հայրենասիրությունը մեր մշտապես գործող զենքն է, որի արդյունավետությունը մեծապես պայմանավորվում է սոցիալիստական արտադրության, աշխատավորության կուլտուրայի և կենցաղի ճիշտ կազմակերպմամբ, գաղափարախոսական և քաղաքական-դաստիարակչական աշխատանքի թափով ու մակարդակով։ Հայրենասիրական դաստիարակությունը պետք է նպաստի այն բանին, որպեսզի սովետական մարդիկ իրենց մտքով ու սրտով, իրենց գործերով ձգտեն է՛լ ավելի գեղեցկացնել հայրենիքը, բազմապատկել նրա հզորությունը, պատրաստ լինեն նվիրաբերելու իրենց ուժերը և, եթե պետք է, նաև կյանքը հայրենիքի պաշտպանության համար։

Հայրենասիրությունը դարձել է մեր քաղաքացիների անքակտելի հատկանիշը։ Եվ, չնայած դրան, մեզ մոտ դեռևս կան մարդիկ, որոնց մտածելակերպն ու արարքները անհամատեղելի են սովետական հայրենասերի բարոյական կերպարին։ Հանդիպում են պորտաբույծներ, ընչաքաղցներ, գռփողներ, շորթողական հակումներ ունեցող մարդիկ։ Հարկավոր է ամեն տեղ և ամենուրեք անհաշտ պայքար մղել այդպիսիների դեմ։ Բուրժուական գաղափարների և բարոյականության դրսևորումների, մանրսեփականատիրական հոգեբանության դեմ մղվող պայքարը կուսակցությունը դիտում է որպես ողջ կոմունիստական դաստիարակության բաղկացուցիչ մասը։ Այստեղ հույժ պատասխանատու խնդիրներ են ծառացած նաև վարչական մարմինների առջև, որոնք կոչված են ամուր կանգնելու սոցիալիստական օրինականության և իրավակարգի պահպանության դիրքերում։



Հայրենասիրության զգացումը անխզելիորեն կապված է նոր մարդու ձևավորման հետ։ Այդ պատճառով էլ դրանով սովետական քաղաքացիներին տոգորելը պետք է կարևոր տեղ ունենա կուսակցական, սովետական և հասարակական կազմակերպությունների ամենօրյա դաստիարակչական աշխատանքում։ Կոմունիստական շինարարության շահերը պահանջում են, որպեսզի աշխատավորների հայրենասիրական դաստիարակությունը միշտ լինի պրոպագանդիստական և ագիտացիոն աշխատանքների, մամուլի, հեռուստատեսության և ռադիոյի, գրականության ու արվեստի ուշադրության կենտրոնում։ Կյանքը բազմիցս է հաստատել, որ աշխատանքային խիզախության կամ մարտական սխրագործության պատրաստակամությունը ձեռք է բերվում անհատի ողջ նախընթաց զարգացմամբ, ճիշտ ու հստակ կենսաիմացությամբ, հասարակական և անձնական շահերի օրգանական միաձուլմամբ։ Այստեղից էլ՝ երիտասարդության հայրենասիրական դաստիարակության հույժ կարևորությունը, այդ շնորհակալ գործում դպրոցի, ընտանիքի, աշխատանքային կոլեկտիվի, կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների ջանքերի արդյունավետ գործադրման անհրաժեշտությունը։

Հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակությունն աշխատավորների ակտիվության բարձրացման կարևոր գործոն է և մեծ չափով նպաստում է տնտեսական խնդիրների լուծմանը։ Արտադրության պրոցեսում, սոցիալիստական մրցության ընթացքում ծնունդ առած հայրենասիրական նախաձեռնությունների արմատավորումը խթանում է ժողովրդական տնտեսության առաջընթացը, նոր հաջողությունների ազդակ դառնում։ Այդ ամենի պերճախոս վկայությունն է ՍՄԿԿ XXVI համագումարի պատվին ծավալված սոցիալիստական մրցությունը։ Հանրապետության կոմունիստներն ու բոլոր աշխատավորները դեպի երկրի կոմունիստների մեծ համաժողով են գնում այն վճռականությամբ, որ ՍՍՀՄ ժողովուրդների միասնական ընտանիքում, լենինյան կուսակցության ղեկավարությամբ նոր նվաճումների կհասնեն կոմունիստական շինարարության, մեր հայրենիքի հետագա հզորության ամրապնդման գործում։

---

# ԸՆԴԴԵՄ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԱՐԴԻ ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ԸՄԲՌՆՈՒՄՆԵՐԻ

Հ. Ս. ՔՈԹԱՆՋՅԱՆ
ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր հասարակական գիտությունների ակադեմիայի ասպիրանտ

ԱՅՍՕՐ ԱՇԽԱՐՀՈՒՄ միջազգային բանվորական շարժման դեմ ուղղված «գաղափարախոսական» և «հոգեբանական» պայքարի զինանոցում հատուկ տեղ է հատկացվում ամերիկյան նորագույն սոցիոլոգիական և սոցիալ-հոգեբանական տեսություններին, որոնք արդիականացնում են կապիտալիստական ձեռնարկատերերի և «վարձու անձնակազմի» միջև դասակարգային հաշտության բուրժուական հայտնի ըմբռնումները։ Այսպես կոչված «պարտիսիպատորական մենեջմենտի» (բազմանձ կառավարում) ըմբռնման սոցիալ-հոգեբանական փաստարկների քննադատությամբ մարքսիստ հասարակագետները միտում են բացահայտել դրանց քաղաքական-գաղափարախոսական ջատագովությունը, որը սքողում է մոնոպոլիստական կապիտալիզմի սոցիալական հակասությունների հետագա սրման պրոցեսը։ Արտադրության կառավարման սոցիալական հոգեբանության ամերիկյան նորագույն տեսությունները քննադատելիս մենք ելնում ենք սոցիալական կառավարման մարքս-լենինյան դրույթներից։

Հասարակության կամ նրա առանձին օղակների գիտակցված սոցիալական կառավարումը ծառայում է նրանց որակական առանձնահատկության, նորմալ գործունեության պահպանմանը, հասարակական ընթացքի առաջադրված նպատակների իրականացմանը։ Հասարակության և արտադրության սոցիալական կառավարման սահմանները, մասնավորապես, դրա բովանդակությունը, նպատակներն ու սկզբունքները պայմանավորված են հասարակության էությամբ, այնտեղ տիրապետող տնտեսական հարաբերություններով, սոցիալ-քաղաքական կարգի բնույթով։ Տիրապետող դասակարգն իր շահերին համապատասխան ստեղծում է հասարակության վրա սոցիալական գործոնների միջոցով ներազդող հասարակական հաստատությունների և կազմակերպությունների մի համակարգ։

Մարդկային հանրությունների կառավարումը կարող է արդյունավետ լինել այն դեպքում միայն, երբ հաշվի են առնվում մարդկանց գործունեության կարգավորման օրինաչափությունները։ Մասնավորապես պետք է նկատի ունենալ կառավարման պրոցեսում հոգեբանական մեխանիզմների գործունեության համաձայնեցումը ղեկավար մարմինների համապատասխան ներգործությունների հետ։

Մենեջմենտի հարցերով զբաղվող ժամանակակից բուրժուական տեսաբանները արտադրախմբերի կառավարման մեջ «մարդկային գործոնի» արդյունավետ հաշվառման իրենց սոցիոլոգիական և սոցիալ-հոգեբանական մոդելներով, վերջին հաշվով, սպասարկում են աշխատավորների կապիտալիստական շահագործման սխեմին։ Կառավարման բուրժուական նորագույն ըմբռնումների «հումանիստական» պաթոսը, ըստ բուրժուական մասնագետների, իբր ուղղված է «արտադրական կազմակերպության վարձու անձնակազմի անհարմարավետ վիճակի ծայրահեղ նվազեցմանը»։ Արտադրության սոցիալական կառավարման մեջ «մարդկային գործոնի» հետազոտման ժամանակակից առավել ճանաչված բուրժուական ըմբռնումների մարքս-լենինյան վերլուծությունը նպատակ է հետապնդում քննադատաբար իմաստավորել սոցիալական հոգեբանության ոլորտում կապիտալիստական արտադրության կառավարման գիտապրակտիկ փորձը։ Հայտնի է, որ կապիտալիստական աշխարհում կառավարումը մի կողմից դրսևորվում է իբրև ամեն մի հանրային արտադրության համար օբյեկտիվորեն անհրաժեշտ ֆունկցիա, իսկ մյուս կողմից՝ իբրև աշխատանքի հասարակական պրոցեսի շահագործմամբ, արտադրության միջոցների, աշխատանքի արդյունքների և բուն աշխատանքային գործունեության օտարմամբ պայմանավորված մի ֆունկցիա։

Արտադրախումբը կազմակերպությունում մարդու կառավարման սուբյեկտ համարելն ամերիկյան բուրժուական սոցիոլոգիայում պատմականորեն առնչված է «մարդկային հարաբերությունների» հանրահայտ տեսության հետ։ Սովետական գիտնականները հանգամանորեն քննադատել են այդ ըմբռնումները։ Այդ դպրոցի ներկայացուցիչները, այսպես կոչված, «հաղորդակցային բարոյագիտության» («կոմունիկատիվ էթիկայի») պրոբլեմների շրջանակներում հանգամանորեն մշակել են ո՛չ միայն գործնական, այլև քաղաքական-գաղափարախոսական հարցեր։ Բացարձականացնելով «խումբ» հասկացությունը, նրանք այն դարձրել են բոլոր սոցիալական կապերի ու հակասությունների միջուկը։ Այդ դպրոցն իր ուշադրությունը սևեռել է ներխմբային միջանձնային հարաբերությունների վրա, դրանք անջատելով հասարակության սոցիալ-տնտեսական, դասակարգային հարաբերությունների կոնտեքստից։ Հենվելով ընդհանուր և սոցիալական հոգեբանության, սոցիոլոգիայի տվյալների վրա, այդ գիտնականները ջանքերը կենտրոնացրել են «փոքր խմբի» ղեկավարման, խմբի անդամների սոցիալական դիրքի ու վարքագծի վրա խմբային ներգործության մեթոդների ուսումնասիրության վրա։

Առանձին տեղական փորձերի հիման վրա ցույց տալով կոնկրետ աշխատանքային նպատակների հասնելու գործում արտադրախմբի անդամների արդյունավետ համագործակցության հնարավորությունը, ամերիկացի գիտնականները հետևցրել են, թե իբր գոյություն ունի բոլոր սոցիալական կոնֆլիկտները լրիվ վերացնելու հնարավորություն՝ սկզբում առանձին խմբերի, այնուհետև կազմակերպության, վերջապես, ամբողջ հասարակության մասշտաբով բացառապես միջանձնային հարաբերությունները կատարելագործելու միջոցով։

Սակայն արդեն 50-ական թվականների վերջին բուրժուական գրականության մեջ և Արևմուտքի գործարար մամուլում քննադատական վերաբերմունք մշակվեց «մարդկային հարաբերությունների» մեթոդների արդյունավետության գնահատման նկատմամբ։ Վերջերս կառավարման բնագավառի բուրժուական մասնագետները բավականին որոշակի խոսում են այն մասին, որ «հաղորդակցային բարոյագիտության» տեսությունն ակնհայտորեն չի արդարացրել իր հետ կապված հույսերը։ Սովետական գիտնականները, չթերագնահատելով բուրժուական մասնագետների կիրառական բնույթի հետազոտությունների նշանակությունը, շեշտում են «մարդկային հարաբերությունների տեսության» գաղափարախոսական ջատագովական էությունը։

Բուրժուական գիտության մեջ և կապիտալիստական ձեռնարկության կառավարման պրակտիկայում վերջին ժամանակներս երևան են եկել մի շարք սկզբունքորեն նոր մոտեցումներ վարձու անձնակազմի խթանման պրոբլեմի լուծման նկատմամբ, որոնց ամբողջությունը ամերիկյան գրականության մեջ կոչվում է պարտիսիպատորական մենեջմենտի (participative management) «գաղափարախոսություն» և «հոգեբանություն»։

Բուրժուական քաղաքական գաղափարախոսության ջատագովները փորձում են պարտիսիպատորական կառավարման կոնցեպցիան ներկայացնել որպես «աշխատատուների» և վարձու անձնակազմի դասակարգային հաշտության ռեալ պլատֆորմ կապիտալիստական ձեռնարկություններում։ Դրա հետ մեկ-

տարրեր են։ Դրանով իսկ խմբի գործունեությունը դուրս է գալիս հիերարխիայի նրա սկզբնական մակարդակի շրջանակներից։

Այսպիսով, որոշումների ընդունման գործին մասնակցելու համակարգը, ամերիկյան գիտնականների տեսական հետազոտությունների համաձայն, մեծացնում է վերահսկողության ծավալը կազմակերպման գործում։ Այժմ անհրաժեշտ է պատասխանել այն հարցին, թե ինչ հարաբերության մեջ են գտնվում դիտարկված տեսական դրույթներն ու կապիտալիստական ժամանակակից արտադրության կառավարման ռեալ պրակտիկան։ Ի պատասխան պետք է նկատել, որ դեռևս 60-ական թվականների առաջին կեսին հարցում էր արվել 14 երկրների 3000 մենեջերների։ Նրանց մեծ մասը հավանություն էր տվել որոշումների պարտիսիպատորական ընդունման գաղափարին։ Չնայած դրան, գործնականում նրանք զգալի չափով պաշտպանում էին կառավարման ինքնակա ոճը, գտնելով, որ իրենց ենթակաները գերադասում են խույս տալ լուրջ պատասխանատվությունից գործի ընթացքի համար։ Մենեջերների դեմոկրատական դեկլարացիաներն այլ բան չեն, քան մի քող, որը ծածկում է մարդկային ունակությունների նկատմամբ եղած խոր անվստահությունը։ Դա պարտիսիպատորական կառավարման նկատմամբ մենեջերների ունեցած վերաբերմունքի և կառավարման նրանց ռեալ մեթոդների միջև եղած զգալի տարբերության բնորոշ օրինակներից է։

Դրա հետ մեկտեղ վերջերս «կյանքի որպիսության» վերաբերյալ ԱՄՆ-ում կատարված լայն հետազոտությունը ցույց է տալիս, որ ամերիկացիներն ամենից ավելի քիչ են բավարարված այն կազմակերպություններով, որոնցում իրենք ծառայում են։Այն զգալի խզումը, որ գոյություն ունի իրենց կազմակերպությունից և իրենց պրոֆեսիոնալ գործունեությունից գոհ լինելու աստիճանների միջև, պերճախոս վկայում է այն մասին, թե ամերիկացիներն ինչպես են վերաբերվում կառավարման գերիշխող ոճին և տիպիկ արտադրական մթնոլորտին։ Կազմակերպություններով բավարարվածության ծայրահեղ ցածր (մյուս ոլորտների համեմատությամբ) գնահատականը, մասնավորապես, նշանակում է, որ ձեռնարկությունում զբաղվածների ճնշող մեծամասնությունը չի ցանկանում քիչ թե շատ լուրջ պատասխանատվություն կրել գործի ընթացքի համար այն պատճառով, որ ֆիրմայի շահերը հակասում են իր սեփական շահերին, ինչպես նաև այն պատճառով, որ միանգամայն անբավարար են «տեղական» աշխատանքային կոնտակտները։ Թե՛ մեկ և թե մյուս դեպքում, ամերիկյան սոցիոլոգների կարծիքով, խոսքը վերջին հաշվով, «ոչ ճիշտ կողմնորոշված մենեջմենտի» հետ կապված պատճառների մասին է։

Ըստ մարքսիզմի, իրականում մենեջմենտի, այդ թվում և պարտիսիպատորական մենեջմենտի «ոչ ճիշտ կողմնորոշվածությունը» ընդհանրապես որոշվում է «աշխատատուների» և կապիտալիստական ձեռնարկությունում որոշումների համատեղ ընդունման միջոցով պատրանքային դասակարգային հաշտության հրավիրվող վարձու աշխատողների փոխհարաբերությունների դասակարգային հակամարտությամբ։

Ժամանակակից ամերիկացի հոգեբանները կառավարման «ճիշտ կողմնորոշման» չափանիշները որոնում են կազմակերպության մեջ աշխատողի անհարմարավետ դրությունը բացատրելու համար զանազան հիպոթեզներ մշակելու միջոցով։ Այդ հիպոթեզների էությունը մեծապես պայմանավորված է դրդապատճառի բազային տեսության տիպով։ Այժմ գոյություն ունեն այդպիսի մրցակցող չորս՝ պահանջմունքների հիերարխիայի, ինստրումենտալ, բիհեվիորիստական և ընկալունակ (կոգնիտիվ) հաշվեկշռի տեսությունները։

Մասլոուի պահանջմունքների հիերարխիայի տեսությունը հիմնված է այն նախադրյալի վրա, որ տվյալ պահանջմունքի (ամենապարզունակ կենսական պահանջմունքներից մինչև ինքնադրսևորումը) բավարարումը նվազեցնում է նրա կարևորությունը՝ որպես դրդապատճառի աղբյուրի, ավելի «կենսական» է դառնում հիերարխիայի հաջորդ պահանջմունքը և այլն։ Այլ կերպ ասած, բավարարված պահանջմունքը դադարում է խթանող դրդապատճառ լինելուց։ Ժամանակին այս ըմբռնումը լայն տարածում էր գտել մենեջմենտի շրջաններում։ Այն կարծիքին էին, որ ինչքան ավելի բարձր է կառավարիչի դիրքը, այնքան



նա ավելի շատ հնարավորություններ ունի բավարարելու իր «բարձր կարգի» պահանջմունքները։

Զարգացման պրոցեսում պահանջմունքների հիերարխիայի տեսությունը ենթարկվել է բազմաթիվ ձևափոխությունների։ Օլդերֆերի ըմբռնումը Մասլոուի «կանոնական» կառուցումից տարբերվում է նաև «ինչպե՞ս և ի՞նչ պահանջմունքներ են էական», «ինչո՞ւ տվյալ պահանջմունքները փոխներգործում են հենց այդ կերպ, ի՞նչ կարելի է ասել դրանց էության մասին» հարցերի պատասխանով։

Եթե Մասլոուն վերլուծել է գործնականորեն միմյանց հետ չփոխներգործող պահանջմունքներ, ապա Օլդերֆերը ենթադրում է նաև հակառակ առկայությունը՝ վերից վար լարման հաղորդումը։ Օրինակ, երբ չեն բավարարվում երրորդ մակարդակի նվազագույն կոնկրետությամբ օրակվող պահանջմունքները, խախտվում է երկրորդ մակարդակի պահանջմունքների բավարարումը և այլն։ Օլդերֆերի կողմից դրդապատճառի պրոբլեմի մեկնաբանումը չափազանց հարմար է մենեջերների համար։ Նրանք համոզում են, որ հնարավոր է ենթակաների եռանդը կոնստրուկտիվ կերպով փոխարկել նույնիսկ այն դեպքում, երբ արգելափակված են բարձրագույն կարգի պահանջմունքները։ Այդ եռանդը կարող է ուղղվել ավելի «երկրային» պահանջմունքների բավարարմանը։

Պահանջմունքների հիերարխիայի տեսության վերջին 15 տարում ամենատարածված ձևափոխությունը կապված է Հերցբերգի անվան հետ։ Խոսքը մի ըմբռնման մասին է, որը տարբերում է երկու մակարդակների պահանջմունքներ. հիգիենիկ և դրդապատճառային։ Հիգիենիկ պահանջմունքների կարգն են դասվում այն գործոնները, որոնք ձևավորում են աշխատանքային գործունեության կոնտեքստը՝ աշխատավարձը, սանիտարատեխնիկական պայմանները, անվտանգության տեխնիկան, փոխհարաբերությունները գործընկերների, պետերի, ենթակաների հետ և այլն։ Դրդապատճառային են համարվում այն պահանջմունքները, որոնց բավարարման աղբյուրը բուն պրոֆեսիոնալ գործունեությունն է և որոշումների ընդունման գործում ինքնուրույնության աստիճանը։

Հերցբերգի տեսակետից, բավարարվածության և անբավարարվածության էությունն իր հիմքով տարբեր է։ Երկու երևույթներն էլ ծնունդ են առնում տարբեր պատճառներից, տարբեր կերպ են ազդում աշխատողի վարքագծի վրա և՛ կարճաժամկետ, և՛ երկարաժամկետ ասպեկտով։ Բավարարվածությունը կապված է նվաճումների ու ճանաչման, պրոֆեսիոնալ գործունեության բնույթի, պատասխանատվության մակարդակի, առաջխաղացման հնարավորության և դրամական վարձատրության հետ։ Անբավարարվածությունը սովորաբար առաջանում է ադմինիստրացիայի քաղաքականության առանձնահատկությունից, կառավարման որակից, անբավարար աշխատավարձից, մենեջերների հետ գոյություն ունեցող հարաբերություններից և աշխատանքի տեխնիկատնտեսական պայմաններից։

Պատահական չէ, որ այս տեսությունն արժանացել է մենեջերների խոր ուշադրությանը։ Նրանց կարծիքով, եթե, դիցուք, հնարավոր է ապահովել հիգիենիկ մակարդակի պահանջմունքներից անցումը դրդապատճառային մակարդակի պահանջմունքների բավարարմանը, ապա գրեթե ինքնաբերաբար կլուծվեին կառավարման դժվարին հոգեբանական պրոբլեմները։ Սակայն Հերցբերգի ըմբռնման փորձնական ստուգումների հետևությունները բավականին հոռետեսական են։ Ելակետային հեղինակային նյութը ի մի է բերվել միայն ինտերվյուի միջոցով։ Հարցազրույցների ընթացքը վերահսկող հետազոտական այլ մեթոդների կիրառման բացակայությունը հեռու գնացող եզրակացությունների հիմնավորվածությունը կասկածի է ենթարկում։

Դրդապատճառի խնդրի նկատմամբ ինստրումենտալ մոտեցումը էապես տարբերվում է Մասլոուի ու նրա հետևորդների եղանակից։ Այստեղ սկզբունքորեն այլ կերպ է նկարագրվում պրոցեսը։ Պահանջմունքների հիերարխիայի տեսության մեջ դրդապատճառները ածանցյալ են բազիսային հոգեբանական պահանջմունքներից (դրայվներից)։ Պատասխանելու համար այն հարցին, թե «աշխատողն ինչո՞ւ է հատկապես այդ կերպ ծախսում իր եռանդը», անհրաժեշտ է իմանալ նրա պահանջմունքների բավարարվածության աստիճանը։ Քա-

նի որ խոսքը չդիտարկվող համակարգի մասին է, ապա չի կարելի արդյունքի հասնել առանց գիտելիքների կուտակած պաշարի։ Ենթադրվում է, որ անցյալ ջանքերի, անհատի լարումների և շրջակա միջավայրի համապատասխան ռեակցիաների ուսումնասիրությունը հնարավորություն է ընձեռում «վերականգնել», թե կոնկրետ ինչ պահանջմունքներն են ծնել հոգեբանական լարումներ և թե ինչ չափով են այդ լարումները վերացվել։ Ինստրումենտալ տեսությունը պահանջմունքի հասկացության վրա չի հենվում։ Ինչ-որ մի արդյունքի հասնելու երաշխիքների գնահատականների ձևավորման մեխանիզմը, այդ արդյունքին հասնելու հետևանքների գնահատականը և այլն՝ որպես ընկալունակ փոփոխականների, ահա, թերևս, այն մագնիսը, որը ձգում է «ինստրումենտալիստների» ուշադրությունը։ Այդ մեխանիզմի բացատրությունն ըստ էության նաև վարքագծի պատճառաբանման պրոցեսի բացատրությունն է։

Վարձատրությունը համարելով շրջակա միջավայրի առավել ուժեղ խթանիչ ռեակցիա արտադրական խնդիրների լուծման գործում անհատի ունեցած մասնակցության արդյունքների նկատմամբ, ինստրումենտալիստները դրանք ըստ անհատական ընկալման բնույթի ստորաբաժանում են ներքին և արտաքին գործոնների։

Պորտեր-Լոլերի մոդելում արտաքին գործոններից են աշխատանքի վարձատրությունը, աշխատանքի պայմանները, ընկերության քաղաքականությունը և այլն։ Հեղինակները ներքին գործոնների թվին են դասում ծառայողական աճը, գնահատությունը, աշխատակիցների վերաբերմունքը և այլն։ Գործոնների հակադրման բաղադրամասերը կարող են նպաստել լարումը վերացնելուն կամ ուժեղացնելուն։ Ներքին գործոնները դիտվում են որպես դրույթների մշակման, արժույթային կողմնորոշումների և արտադրական խնդիրների լուծմանը մասնակցելու արդյունքներով աշխատողների բավարարվածության վրա ազդելու միջոց։ «Արդյունք-բավարարվածություն» կապը միջնորդավորող գործոններ են համարվում իր աշխատանքի արդյունքների ինքնագնահատումներն աշխատողի կողմից (որպես աշխատողի կարծիք այն մասին, թե ձեռք բերած արդյունքի համար ինչպիսի վարձատրությունն է նա համարում արդարացի)։

Դրդապատճառի ժամանակակից բիհեվիորիստական մոդելները Բ. Սքիների ու նրա հետևորդների վարքագծի ձևափոխման ըմբռնման շրջանակներում բավականին լայնորեն հայտնի են։ Նշենք միայն Դեսիի հետազոտությունը, որը փորձել է գործնականորեն ցույց տալ, որ որոշակի պայմաններում «վարձատրման» հետևողական մեծացումը կարող է բացասաբար անդրադառնալ աշխատողի շահագրգռության վրա։

Հոգեբանական լարումների հավասարակշռության տեսության կողմնակիցները ենթադրում են, որ վարքագիծը նախաձեռնվում, ուղղվում և պաշտպանվում է անհատի չգիտակցված ձգտումով՝ պահպանելու հոգեբանական լարումների ինչ-որ մի ներքին հավասարակշռություն։

Հավասարակշռային տեսության ինդուստրիալ տարբերակներից ամենից ավելի տարածվածն է Ադամսի «արդարության իրավունքի» ըմբռնումը։ Այստեղ լարումների հավասարակշռությունը դիտվում է որպես մի ինչ-որ հավասարակշռություն դրդապատճառների համակարգի և սպասվող վարձատրությունների միջև։ Եթե ռեալ վարձատրությունը չի համընկնում սպասածին, ապա հավասարակշռությունը խախտվում է։ Լարումը վերացնելու վարքագիծ մշակելիս աշխատողը կողմնորոշվում է դեպի «նշանավոր այլոց», այսինքն՝ իր գործընկերների վարքագիծը, որոնք նույնպես փորձում են ազատվել համանման պատճառների ազդեցությամբ առաջացած անհարմարավետության զգացումից։ Եթե մի խումբ աշխատողների մոտ միատիպ է հավասարակշռության խախտումը (օրինակ, բոլորի մոտ էլ ռեալ վարձատրությունը պակաս է (ավելի է) սպասածից միևնույն համամասնությամբ), ապա նրանց միավորում է «արդարության իրավունքը»։ Այլ կերպ ասած, լարվածությունը վերացնելու ձգտման մեջ նրանցից յուրաքանչյուրը իրավացի է գործելու ճիշտ այնպես, ինչպես իր գործընկերները։

Արևմուտքի ժամանակակից ինդուստրիալ սոցիալական հոգեբանությունը ձեռնարկատերերին և պրոֆեսիոնալ կառավարիչներին մղում է այն բանին, որ



կառավարման ընդունված ձևերի վինանոցում հարկավոր է հաշվի առնել աշխատողների արտադրական վարքագծի կարգավորման սոցիալ-հոգեկան մեխանիզմների գործողության վիճակները և միտումները։ Ամերիկյան մասնագետները աշխատողի շահագրգռման ակտիվացման ընդունված գործոններ են համարում «ստորին կարգերի» վարձու անձնակազմի մասնակցության բուն կազմակերպման բաղադրամասերն այն որոշումների ընդունման գործում, որոնք ուղղված են ո՛չ միայն ձեռնարկության տեխնիկատնտեսական նպատակների իրագործմանը, այլև աշխատողների կենսական (Մասլոու), գոյության (Օլդերֆեր), հիգիենիկ (Հերցբերգ) և այլ պահանջմունքների բավարարմանը։

Որոշումներ կիրառելիս նման մասնակցությունը, ինչպես գտնում են ամերիկյան սոցիալական հոգեբանության ներկայացուցիչները, ակտիվացնում է աշխատողի վարքագծի կառավարման բուն սոցիալ-հոգեբանական գործոնների ազդեցությունը։

Այն մեխանիզմների միագումարը, որոնք ամերիկյան տեսաբանները համարում են արտադրության կազմակերպման մեջ աշխատողի պայմանների անհարմարավետության առավել նվազեցման սոցիալ-հոգեբանական գործոնները, ու եթե վերանանք տերմինաբանական տարանջատումներից և պարտիսիպատորական մենեջմենտի սոցիալական հոգեբանության քաղաքական-գաղափարախոսական ջատագովությունից, ապա ուրվագծվում են սոցիալական միկրոմիջավայրի հասարակական փաստերի նկատմամբ աշխատողի սուբյեկտիվ հարաբերությունները՝ զանազան ձևերով (լավագույն դեպքում ամբողջ կապիտալիստական ձեռնարկության՝ ֆիրմայի, կոնցեռնի շրջանակներում և այլն)։

Անհատի վարքագծի կարգավորման գիտակցական ոլորտին համապատասխանող գործոնների մեջ առավելապես կարելի է առանձնացնել դրույթները և արժույթային կողմնորոշումները, աշխատողների լարումների արդյունքների սուբյեկտիվ գնահատականներն ու ինքնագնահատականները, կարծիքները աշխատողի գործնական արդյունքների «արտաքին» գնահատականների (վարձատրությունների) մասին, բավարարվածությունը ջանքերի արդյունքներով (գործունեության այս կամ այն ոլորտում)։

Քննարկված դրդապատճառային տեսությունները կոչված են ծառայելու պարտիսիպատորական մենեջմենտի պրակտիկային, որպես բոլոր թվարկված սուբյեկտիվ հարաբերությունների փաստարկ։ Այդ արժույթների վարքագծային իրացման եղանակները, որոնք բնորոշ են աշխատողների գործունեության այս կամ այն ոլորտին, ենթակա են պարտիսիպատորական կառավարման։

Այսպիսով, կարելի է եզրակացնել, որ բուրժուական սոցիոլոգիական և սոցիալ-հոգեբանական տեսությունները, որոնք ծառայում են պարտիսիպատորական մենեջմենտի ըմբռնմանը, իրենց էությամբ ջատագովական են և նպատակամղված են «աշխատավորների» և «վարձու անձնակազմի» միջև դասակարգային հաշտության հնարավորության բավական խորամանկ հիմնավորմանը։ Պարտիսիպատորական մենեջմենտը ձեռնարկատերերին կողմնորոշում է աշխատավորների գիտակցության և վարքագծի մանիպուլյացիային՝ արտադրության կապիտալիստական եղանակի սրված սոցիալ-տնտեսական, դասակարգային հակասությունների պայմաններում ոչ միայն «վերևից», պրոֆեսիոնալ կառավարիչների «ձեռքերով», այլև ներքևից՝ վարձու անձնակազմի դրդապատճառների ոլորտի կարգավորման սոցիալ-հոգեկան մեխանիզմների նպատակամղված շահագործման միջոցով։ Անհատի գիտակցության ոլորտի համար բնորոշ կայուն, արտաիրավիճակային պահանջմունքների դերի նսեմացումը պարտիսիպատորական մենեջմենտի սոցիալական հոգեբանության մոդելներում ուղղված է բանվոր դասակարգի դասակարգային պայքարի քաղաքական հորիզոնի սահմանափակման կողմը հոգեբանական հարմարավետության շրջանակներում, որն ընդգրկված է կապիտալիստական ձեռնարկության «քաղաքականության» ոլորտում։ Պրակտիկան վկայում է, որ «վարձու անձնակազմը» բազմակերպ օգտագործելու համար բավական նրբորեն մշակված սոցիալ-հոգեբանական միջոցներով հագեցած պարտիսիպատորական մենեջմենտն իրենից ներկայացնում է բանվոր դասակարգի և ինժեներատեխնիկական աշխա-

*տողների միջավայրից բանվորական արիստոկրատիայի և, այսպես կոչված, «կառավարչական ակտիվի» հավաքագրման, կառավարչական «բանող խմբերի» մեջ ներգրավելու միջոցով արհմիութենական ակտիվիստների ընտելացման համակարգ։*

*Հետևաբար, պարտիսիպատորական մենեջմենտը կապիտալիստական երկրներում բանվոր դասակարգի շարժման դեմ յուրատեսակ «հոգեբանական պատերազմ» մղելու քաղաքական-գաղափարախոսական հատու միջոց է։ Դրանով է բացատրվում պարտիսիպատորական մենեջմենտի տեսության ու պրակտիկայի մարքս-լենինյան քննադատական իմաստավորման առանձնահատուկ հրատապությունը՝ գաղափարախոսական և քաղաքական հակազդման արդյունավետ միջոցներ մշակելու նպատակով։*

### ՕԳՏԱԳՈՐԾՎԱԾ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

[1] АФАНАСЬЕВ В. Г. **Человек в управлении обществом.** М., Политиздат, 1977, стр. 58—61.

[2] АНДРЕЕВА Г. М., БОГОМОЛОВА Н. Н., ПЕТРОВСКАЯ Л. А. **Современная социальная психология на Западе** (теоретические направления). М., МГУ, 1978. БОГОМОЛОВА Н. Н. **Доктрина «человеческих отношений» — идеологическое оружие монополий.** М., 1970. ВИЛЬХОВЧЕНКО Э. Д. **Критика современной буржуазной теории человеческих отношений в промышленности.** М., 1971. ГВИШИАНИ Д. М. **Организация и управление.** М., 1972. ЛАПИН Н. И. **Проблема неформальной группы в индустриальной социологии.** В. кн.—**Социальные исследования,** вып. 2, М., 1968.



# ՀՈՂԱՅԻՆ ՌԵՍՈՒՐՍՆԵՐԻ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ ՕԳՏԱԳՈՐԾՄԱՆ ՀԱՄԱՐ

ՀՈՂԱՅԻՆ ՌԵՍՈՒՐՍՆԵՐԻ արդյունավետ օգտագործումն ունի կենսական նշանակություն։ Ուստի անհրաժեշտ է քանակական և որակական առումներով արժեքավորել գյուղատնտեսական յուրաքանչյուր ձեռնարկությանն ամրացված հողային ֆոնդը։ Այս կարևոր պրոբլեմին է նվիրված գրախոսվող մենագրությունը*։

Աշխատության տեսական ելակետներից մեկն այն է, որ չնայած հողը մեր երկրում ազգայնացված է և առք ու վաճառքի ենթակա չէ, սակայն հողային հարաբերությունները դուրս չեն կարող մնալ ապրանքադրամական հարաբերությունների շրջանակներից և ազդեցությունից։ Պետականորեն պահանջվում է պահպանել և խնայողաբար օգտագործել հողը և բնական մյուս ռեսուրսները։ Սակայն եթե հայտնի չէ տվյալ հողահանդակի դրամական գնահատումը, այսինքն՝ գինը, ապա ըստ էության հնարավոր չէ որոշել նաև նրա պահպանման հանրորեն անհրաժեշտ ծախսերը։ Հողի գնի սահմանումը հիմք է տալիս գիտականորեն կարգավորել բնության պահպանման խնդիրները, կանխել հողի շռայլումները, ինչպես նաև հիմնավորել գյուղատնտեսական ձեռնարկությունների հասարակության (պետության) հանդեպ ունեցած պարտավորությունների ծավալը՝ յուրաքանչյուր գոտու, շրջանի և տնտեսության առումով։ Հողի գնահատումը չափազանց կարևոր է նաև բնական տարբեր գոտիներում աշխատող կոլեկտիվների համար զարգացման շատ թե քիչ հավասար պայմանների ստեղծման տեսակետից։

Վերլուծելով գյուղատնտեսության մեջ հողային ֆոնդի օգտագործումը և մասնավորապես հողերի, այսպես կոչված, դուրս գրումներն ու հատկացումները ոչ գյուղատնտեսական նպատակներով, գրքի հեղինակները ուշադրություն են հրավիրում այն կարևոր հանգամանքի վրա, երբ հաճախ գյուղատնտեսության շրջանառությունից դուրս են գրվում և շինարարությանը հատկացվում բարձր արգավանդ, թանկարժեք հողեր (Երևանի, Լենինականի, Հրազդանի, Կիրովականի շրջակայքում), չնայած որ այդ նույն վայրերում գրեթե միշտ առկա են գյուղատնտեսության համար ոչ պիտանի տարածությունները։

Դրա պատճառը հիմնականում հողի գնահատման բացակայությունն է։ Անշուշտ, եթե մեր նախագծողները և շինարարները իրենց ձեռքի տակ ունենային մեկ հեկտար վարելահողի, այգու կամ այլ հանդակների տնտեսական արժեքը, այդ դեպքում նրանք հազիվ թե այդքան անհոգ վերաբերվեին գյուղատնտեսության համար պիտանի հողերի հանդեպ։ Դուրս գրված հողերի փոխհատուցման ներկա ձևը շատ հեռու է հողի գնահատումից և իրականում նպաստում է գյուղատնտեսական ցանկացած հողահանդակների դուրսգրմանը։

Այսպիսի պայմաններում կորուստները և վնասները մնում են թաքնված կամ քողարկված, քանի դեռ հասարակությունը ճշգրիտ չի հաշվարկել և չի գնահատել իր կատարած այն ծախսերը, որոնք պահանջվում են այս կամ այն հողամասի իրացման ու օգտագործման համար, և այն եկամուտը (արդյունքը), որն ստացվում է դրա օգտագործումից։

Գրախոսվող աշխատությունում հանգամանորեն քննարկվում են հողային ռենտայի որոշման մեթոդական տարբերակները, հաշվարկվում է ռենտայի մեծությունը հանրապետության գյուղատնտեսության կարևորագույն ճյուղերում, մասնավորապես խաղողագործության մեջ և, վերջապես, դրա հիման վրա տրվում է այգիների տնտեսական գնահատումը, ըստ էության՝ նրանց գինը։

Այստեղ նշված է, որ հողը գնահատելիս անհրաժեշտ է հաշվի առնել, նախ, դրա իրացման հանրորեն անհրաժեշտ ծախսերը, ելնելով վատթարագույն պայմաններում այդ ծախսերի մեծությունից, երկրորդ, գյուղատնտեսության

* *Ն. Մ. Մանասերյան, Լ. Ի. Ադամյան,* Հողի գնահատման տնտեսական պրոբլեմները Հայկական ՍՍՀ-ում, *ՀՍՍՀ ԳԱ հրատ., 1979։*

մեջ տվյալ հողի շահագործման ընթացքում գոյացող ամբողջ զուտ եկամտի մեծությունը, այդ թվում և դիֆերենցիալ հողային ռենտան: Քանի որ ռենտան գյուղատնտեսության մեջ ստեղծվող զուտ եկամտի բաղկացուցիչ մասն է և այն առանձնահատուկ դեր ունի պետության հետ ունեցած տնտեսական հարաբերություններում, հետևաբար, առանց ռենտայի հողի գնահատումը լիարժեք և ստույգ լինել չի կարող:

Այսպիսով, հողի գնահատումն անհրաժեշտ է իրականացնել, ելնելով ինչպես զուտ եկամտի, այնպես էլ հողային ռենտայի մեծությունից, ընդ որում, երկու դեպքում էլ դրանց գումարը բազմապատկվում է (կապիտալացվում է) գյուղատնտեսության հիմնական միջոցների շահագործման (կամ լրիվ ամորտիզացիայի) միջին ժամկետով (մասնավորապես խաղողի և պտղատու այգիների գնահատման դեպքում այդ ժամկետը ընդունվում է 50 տարի): Գնահատման այդ երկու տարբերակներից յուրաքանչյուրը ծառայում է իր նպատակին. հողային ռենտայով գնահատումը ծառայում է գյուղատնտեսության պլանավորման զանազան խնդիրներին, իսկ ամբողջ զուտ եկամտով գնահատումը՝ գյուղատնտեսության միջճյուղային կապերին: Վերջինս յուրատեսակ պատնեշ է գյուղատնտեսության օգտակար հողերի չհիմնավորված օտարման և շռայլումների ճանապարհին: Հողի գնահատման այս մեթոդը ավելի օբյեկտիվ և օգտակար է, հետևաբար, նաև հիմնավոր:

Մեկ հեկտար խաղողի այգու միջին գինը հանրապետությունում, ելնելով ռենտայի չափերից, հեղինակների հաշվարկմամբ 34.900 ռուբլի է, մինչդեռ զուտ եկամտով հաշվարկած՝ 92.700 ռուբլի: Ընդ որում, երկու դեպքում էլ հաշվի են առնվում նաև հողի գյուղատնտեսական իրացման և այգու հիմնադրման ծախսերը:

Հողի ճիշտ գնահատումը և դրա արդյունքների անշեղ կիրառումը հողային ֆոնդի պահպանման ու անհրաժեշտության դեպքում հողերի ոչ գյուղատնտեսական (հատկապես շինարարության) նպատակներով խելացի տարբերակի ընտրության հարցը մեր սակավահող հանրապետությունում ունի կենսական նշանակություն: Այդ մասին է վկայում նոր ջրամբարներ կառուցելու տեղի ընտրության տարբերակների վերլուծությունը՝ հողի գնահատման առաջարկվող մեթոդիկայով:

Առաջիկա տասնամյակում հանրապետությունում նախատեսվում է ջրաշինարարական խոշոր մասշտաբի աշխատանքներ իրականացնել ինչպես Սևանա լճի ջրերի խնայողաբար օգտագործման, այնպես էլ գյուղատնտեսական հողերի ոռոգման պահանջները բավարարելու նպատակով:

Հանրապետության սակավահողությունը թելադրում է, թեկուզ և ավելի մեծ ծախսերի գնով, ջրամբարների համար հատկացնել գյուղատնտեսությանը ոչ պիտանի կամ քիչ պիտանի հողեր: Այս առումով, անշուշտ, ուշագրավ են գրախոսվող գրքում հողի գնի մասին արված առաջարկությունները: Ճիշտ կլինի հանրապետության բերրի, արժեքավոր հողատարածությունները, ինչպես Արարատյան և Շիրակի դաշտերը, կառավարության որոշմամբ հայտարարվեն անձեռնմխելի ոչ գյուղատնտեսական նպատակներով օգտագործման համար:

Քննարկվող հարցերը, անտարակույս, ավելի լայն նշանակություն են ձեռք բերում, քան հողի գնահատումն է, որովհետև դրանք առնչվում են գյուղատնտեսական արդյունքի ինքնարժեքի , արժեքի և գնի, պետության և գյուղատնտեսական ձեռնարկությունների միջև զուտ եկամտի և ռենտայի բաշխման համամասնությունների, հանրային հողօգտագործման կարգավորման հարցերի և հողային հարաբերությունների ամբողջ համակարգի հետ:

Մենագրության մեջ գիտականորեն շարադրված է հողային ռենտայի հարաբերությունների հարցերի լայն շրջանակ: Այնուհետև հիմնավոր փաստարկներով քննվում է այն խնդիրը, որ հողի գնահատումը չի կարող երկար ժամանակ գոյատևել և խաղաղ գոյակցել անվճար հողօգտագործման արդի պրակտիկայի հետ, և տրամաբանորեն պահանջվում է վճարովի հողօգտագործման կիրառում: Հեղինակները ակնհայտորեն այս վերջին տեսակետի շեշտված կողմնակիցն են, ընդ որում, այս հարցը քննարկվում է բնավ ոչ վերացական, այլ կոնկրետ իրականության, կոնկրետ նյութերի և փաստերի հիման վրա: Ինչևիցե, պատասխանը թեև վիճելի է թվում, թեկուզև այն պատճառով, որ մեր օրենսդրության մեջ վաղուց ի վեր հաստատվել է հողի և բնական մյուս ռեսուրսների անվճար օգտագործման սկզբունքը, սակայն հողօգտագործման վարձի կիրառման անհրաժեշտությունը տնտեսագիտորեն հիմնավորված պետք է համարել:

Այնուամենայնիվ, այս բնավ չի նշանակում, որ քննարկվող հարցը կարելի է սպառված համարել, մեզ թվում է, որ գրքի հիշատակված բաժինը պետք է ավելի շուտ հարցադրում համարել, քան հարցի լուծում:

Գրախոսվող աշխատության 3-րդ և 4-րդ գլուխները նվիրված են հողի տնտեսական գնահատման ժամանակակից պրակտիկային: Այստեղ լուսաբանված են հարցի պատմությունն ու հողագնահատման պրակտիկան ՍՍՀՄ-ում և արտասահմանյան երկրներում, հիմնավորված են հողի տնտեսական գնահատման սկզբունքները և մեթոդիկան, չափանիշի ու ցուցանիշների համակարգը: Վիճակագրական զանգվածային տվյալների մշակման և վերլուծության հիման վրա տրվում է հանրապետության տարբեր բնական գոտիների կարևորագույն հողատեսքի՝ վարելահողերի համեմատական տնտեսական գնահատումը:

Հետազոտվող պրոբլեմի մեթոդաբանական հարցերը պարզաբանելու նպատակով օգտագործվել է մեծ ծավալի ինֆորմացիա, որը հեղինակներից պահանջել է տալու դրանց մշակման եղանակները:

Հայտնի է, որ հանրապետության համար բնորոշ են բնատնտեսական պայմանների խիստ բազմազանություն. չափազանց փոքր տարածքի վրա, ուղղաձիգ գոտիներով: Ուստի և միանգամայն օբյեկտիվ է աշխատության ելակետը՝ հողի գնահատման համար հիմք ընդունելով ուղղաձիգ գոտիականության սկզբունքը: Հողագնահատման շրջանների սահմանազատման և գնահատվող հողերի դասակարգման հիմքում դրված է հանրապետության հողագիտության և ագրոքիմիայի գիտահետազոտական ինստիտուտի մշակած՝ հողերի շրջանցման սխեման և դրանց բոնիտացումը: Միաժամանակ հաշվի է առնված հողերի կուլտուրականացման աստիճանը և դրանց մշակման եղանակները:

Հայկական ՍՍՀ-ի համար գրքում առանձնացված են համալիր հատկություններով օժտված հողագնահատման 60 միավորներ, որոնք ընդգրկում են հանրապետության գրեթե ամբողջ մշակվող հողերը:

Յուրաքանչյուր ուղղաձիգ բնական լանդշաֆտի սահմաններում, ըստ հողագնահատման շրջանների և դրանց բնորոշ ոռոգման պայմանների, հողի տնտեսական գնահատման նպատակով ընդգրկվել են այն բոլոր տնտեսությունների տնտեսական ցուցանիշները, որոնք ներկայացնում են տվյալ գոտու հիմնական հողերը և հիմք են ծառայել մշակելու համար հանրապետական հողագնահատման միասնական համակարգ:

Ուշագրավ են հողերի տնտեսական գնահատման առանձնահատկությունների վերլուծությունը և դրա արդյունքները, որոնք ունեն գիտագործնական նշանակություն: Հանրապետական հողագնահատման միասնական սանդղակները կարող են հիմք ծառայել միջտնտեսային (առանձին տնտեսությունների, շրջանների, գոտիների և ներտնտեսային առանձին հողամասերի, բրիգադաների) հողերի ընդհանուր և մասնակի գնահատման համար: Դրա շնորհիվ ուսումնասիրության արդյունքները կարելի է օգտագործել յուրաքանչյուր տնտեսությունում կոնկրետ խնդիրներ լուծելիս:

Աշխատության մեջ շարադրված են բոլոր վարչական շրջանների և գոտիների վարելահողերի ընդհանուր գնահատման արդյունքները: Մեր կարծիքով, գրախոսվող մենագրությունն ավելի շահած կլիներ, եթե տրվեին ո՛չ միայն վարելահողերի, այլև մյուս հողատեսքերի գնահատման արդյունքները: Դա ամբողջական պատկերացում կտար հանրապետության հողային ռեսուրսների վերաբերյալ: Մանավանդ որ, ինչպես հեղինակներն են նշում, այդ նպատակով լուրջ աշխատանքներ են կատարվել ՀՍՍՀ ԳԱ տնտեսագիտության ինստիտուտում:

Աշխատության հեղինակները չեն սահմանափակվել սոսկ հողի գնահատման տնտեսական ու մեթոդական հարցերի լուսաբանմամբ, այլև կարողացել են ըստ ամենայնի ցույց տալ հողային ֆոնդի պահպանման և խելացի օգտագործման ժողովրդատնտեսական կիրառական նշանակությունը, կատարել են արժեքավոր հետևություններ և առաջարկություններ, որոնք մեծապես կնպաստեն հողերի օգտագործման արդյունավետության բարձրացմանը:

Աշխատությունը զերծ չէ նաև թերություններից. նկատվում են կրկնություններ, հատկապես մեթոդական հարցերի լուսաբանման ընթացքում (գլուխ 2 և 4): Չնայած գրքի սկզբում հիմնավորված է հողի ոչ միայն համեմատական, այլև բացարձակ, այսինքն դրամական գնահատման անհրաժեշտությունը, սակայն վերջինս կիրառվում է միայն բազմամյա տնկարկների գնահատման համար, այսինքն՝ մասնակիորեն: Ինչ վերաբերում է վարելահողերին, ջրովի և անջրդի հողերին, ապա դրանց գնահատումը տրվում է միայն հարաբերական (բալային) ցուցանիշներով:

Ցանկալի է, որ հեղինակները հողերի դրամական գնահատումը տային ավելի համապարփակ ձևով:

Հիրավի, հողի տնտեսական գնահատումը նպաստում է գյուղատնտեսության պլանավորման կատարելագործմանը, հանրային հողօգտագործման կարգավորմանը, սահմանափակում է հողի ոչ գյուղատնտեսական նպատակներով օգտագործումը:

Գ. Ե. ԱՎԱԳՅԱՆ
Աշխարհագրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐԸ

Լույս ընծայվեց Կուսակցական շինարարություն ուսումնական ձեռնարկը*, որը թարգմանվել է ռուսերեն հինգերորդ, լրացված հրատարակությունից: Այն նախատեսված է կուսակցական աշխատողների, կուսակցական դպրոցների և դասընթացների, մարքսիզմ-լենինիզմի համալսարանների ունկնդիրների համար: Գիրքն օգնում է մեր ղեկավար կադրերին, բոլոր կոմունիստներին՝ ավելի խոր ուսումնասիրելու կուսակցական շինարարության լենինյան սկզբունքները և դրանք ստեղծագործաբար կիրառելու իրենց պրակտիկ աշխատանքում:

Կուսակցական շինարարությունը պրոլետարիատի հեղափոխական կուսակցության մասին մարքս-լենինյան ուսմունքի անքակտելի մասն է: Կուսակցական շինարարությունը,— ասված է ուսումնական ձեռնարկում,— գիտություն է կոմունիստական կուսակցության զարգացման և նրա ղեկավար դերի աճի օրինաչափությունների, կառուցման սկզբունքների, կազմակերպման ձևերի ու նրա ներքին կյանքի կանոնների, մասսաների շրջանում կուսակցության կազմակերպչական ու քաղաքական աշխատանքի, տնտեսական ու կուլտուրական շինարարության, պետական և աշխատավորների հասարակական կազմակերպությունների ղեկավարման մեթոդների ու եղանակների մասին:

Կուսակցական շինարարության գիտական հիմունքները մշակել և իր գործունեության ընթացքում հետևողականորեն կիրառել է Վ. Ի. Լենինը: Եվ կյանքը, ՍՄԿԿ-ի ու միջազգային կոմունիստական և բանվորական շարժման փորձը լիովին հաստատեցին կուսակցության կազմակերպական կառուցվածքի ու ղեկավարման այդ սկզբունքների, աշխատանքի լենինյան ոճի և ներկուսակցական կյանքի նորմերի կենսունակությունը: Մեր կուսակցությունն իր գործունեության ընթացքում անդադրում հոգացել ու հոգում է կուսակցական շինարարության պրոբլեմների հետագա գիտական մշակման, աշխատանքի ձևերի ու մեթոդների կատարելագործման մասին, որպեսզի իր զարգացման օրինաչափությունները մշտապես համապատասխանեն հասարակական կյանքի պահանջներին, պատմական տվյալ կոնկրետ իրադրությանը և առաջադրվող խնդիրներին: Այդ մասին հստակ ու որոշակի է ասված ՌԿ(բ)Կ X համագումարի ընդունած բանաձևում, ուր նշված էր. «Հեղափոխական մարքսիզմի կուսակցությունը հիմնովին մերժում է կուսակցական կազմակերպության այնպիսի ձևերի, ինչպես և նրա աշխատանքի այնպիսի մեթոդների որոնումները, որոնք բացարձակապես լիակատար պիտանի լինեն հեղափոխական պրոցեսի բոլոր աստիճանների համար» (ՍՄԿԿ-ն համագումարների, կոնֆերանսների և Կենտկոմի պլենումների բանաձևերում ու որոշումներում, I մաս, «Հայպետհրատ», 1954 թ., էջ 657):

Պատմական կոնկրետ իրադրության և դրանից բխող նոր պրոբլեմների ու խնդիրների համեմատ մշտապես փոփոխվել ու կատարելագործվել են կուսակցության կազմակերպական աշխատանքի ձևերը: Արդի ժամանակաշրջանում, երբ անչափ մեծացել են կոմունիստական շինարարության մասշտաբները, առաջադրվել են սոցիալ-տնտեսական, քաղաքական նոր ու բարդ պրոբլեմներ, բնականաբար և աճում է հասարակության կյանքում կուսակցության ղեկավար դերը, անհրաժեշտ է դառնում ըստ ամենայնի ուժեղացնել ՍՄԿԿ-ի գաղափարական, քաղաքական և կազմակերպչական գործունեությունը: Կուսակցական շինարարության տեսության մեջ և պրակտիկայում նոր նշանակալից ներդրում կատարեցին մեր կուսակցության XXIII և XXIV համագումարները: Զարգացնելով նրանց կողմից առաջ քաշված դրույթները և արտացոլելով հասարակական զարգացման օբյեկտիվ տենդենցները, ՍՄԿԿ XXV համագումարը մշակեց զարգացած սոցիալիզմի պայմաններում կուսակցության ներքին կյանքի կազմակերպման և նրա զարգացման օրինաչափությունների գիտական հիմունքները:

* Կուսակցական շինարարություն: *Ուսումնական ձեռնարկ: Հեղինակային կոլեկտիվ՝ Ն. Ա. Պետրովիչի ղեկավարությամբ, «Հայաստան» հրատ., 1980 թ., էջ 672:*



ԼԵՆԻՆՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ կուսակցությունն անցել է զարգացման մեծ ու փառավոր ուղի, հերոսական պայքարի ու ծանր փորձությունների, մեծագույն հաղթանակների ուղի: ՍՄԿԿ-ի ղեկավարությամբ սովետական ժողովուրդը աշխարհում առաջինը ճանապարհ հարթեց դեպի սոցիալիզմ և վստահորեն ընթանում է դեպի կոմունիզմ: Մեր կուսակցությունը սովետական հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժն է, այն ստեղծվել, աճել ու զարգացել է որպես իսկական պրոլետարական ինտերնացիոնալիստների կուսակցություն և խորապես ինտերնացիոնալ է իր գաղափարախոսությամբ, կառուցման ու գործունեության բնույթով:

Ուսումնական ձեռնարկից ընթերցողը հարուստ նյութեր է քաղում գիտական կոմունիզմի կուսակցության մասին մարքս-լենինյան ուսմունքի, կուսակցության գաղափարական և կազմակերպական հիմունքների, նոր տիպի հեղափոխական կուսակցության առաջացման պատմական անհրաժեշտության և նրա զարգացման օբյեկտիվ պրոցեսների մասին:

Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը, հայտնագործելով հասարակական զարգացման օրինաչափությունները, սոցիալիստական մտքի պատմության մեջ առաջին անգամ ձևակերպեցին բանվոր դասակարգի հեղափոխական կուսակցության մասին ելակետային դրույթները, մշակեցին նրա կազմակերպման ու գործունեության հիմունքները և դրանք մարմնավորեցին պրակտիկայում՝ հանձին իրենց իսկ հիմնադրած «Կոմունիստների միության»: Հենվելով Մարքսի և Էնգելսի ուսմունքի, համաշխարհային և ռուսական բանվորական շարժման փորձի վրա, ստեղծագործաբար զարգացնելով մարքսիզմի հիմնադիրների գաղափարները, Վ. Ի. Լենինն ստեղծեց մի ամբողջական ուսմունք բանվոր դասակարգի նոր տիպի կուսակցության մասին՝ որպես պրոլետարիատի կողմից նրա պատմական առաքելության իրականացման պարտադիր նախադրյալի: Վլադիմիր Իլյիչը ոչ միայն հիմնավոր կերպով մշակեց մարքսիստական կուսակցության գաղափարական և կազմակերպական հիմունքները, այլև դասակարգային գոռ մարտերում ստեղծեց, կռեց ու կոփեց այդ կուսակցությունը:

ՍՄԿԿ-ն ստեղծվեց գաղափարական ամրակուռ հիմքի՝ մարքս-լենինյան ուսմունքի վրա: Սակայն դա դեռ բավական չէր, որպեսզի նա կարողանար հաջողությամբ կատարել բանվոր դասակարգի, աշխատավորական զանգվածների քաղաքական առաջնորդի, դաստիարակի և կազմակերպչի իր դերը: Անհրաժեշտ էր կուսակցության գաղափարական միասնությունը սերտորեն զուգորդել կազմակերպական միասնությամբ: Գրախոսվող գրքում հանգամանորեն լուսաբանված են ՍՄԿԿ-ի կազմակերպական հիմունքները:

Գրքում պարզաբանված են կուսակցական կյանքի լենինյան նորմերը, այն սկզբունքները, որոնցով կարգավորվում է կուսակցության ներքին կյանքը, որոշվում են նրա կազմակերպական ձևերը, աշխատանքի մեթոդները, կոմունիստների վարքագիծը: Այդ ամենը սերտորեն առնչվում է կուսակցական ղեկավարման լենինյան դրույթների հետ, որոնք ստեղծագործաբար զարգացվում են կուսակցության կողմից և հարստացվում նրա փորձով: Դրանք գիտականորեն հիմնավորված և պրակտիկայում ստուգված դրույթներ են հասարակական զարգացման պրոցեսների, կուսակցական ղեկավարման մեթոդների ու եղանակների մասին, որոնց հետևողական իրագործմամբ կուսակցությունը կարողանում է երկրի զարգացման յուրաքանչյուր փուլում գտնել հասունացած պրոբլեմների ճիշտ լուծումներ:

Կուսակցական շինարարության տեսության ու պրակտիկայի արմատական հարցերից մեկը կուսակցության անդամության հարցն է, նրա կազմի ձևավորման սկզբունքներն ու եղանակները: Գրքում քննարկվում են ՍՄԿԿ-ի կազմի, նրա սոցիալական բազայի, կուսակցության մեջ անհատական ընտրության, կոմունիստների պարտականությունների ու իրավունքների մասին հարցերը, ցույց է տրված, թե ինչպես կուսակցության անդամության մասին լենինյան դրույթների կիրառումը նրա զարգացման բոլոր փուլերում ապահովել են ՍՄԿԿ-ի մարտունակության բարձրացումը, նրա շարքերի անաղարտությունը, բարձր կազմակերպվածությունը և գաղափարական համախմբվածությունը: Մեր երկրի էկոնոմիկայում և հասարակության դասակարգային կառուցվածքում տեղի ունեցած արմատական տեղաշարժերի շնորհիվ անհամեմատ ընդլայնվել է կուսակցության սոցիալական բազան: ՍՄԿԿ-ն իր շարքերում միավորում է բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության ու մտավորականության լավագույն ներկայացուցիչներին: Դառնալով ամբողջ սովետական ժողովրդի կուսակցություն, նա բնավ չի կորցրել իր դասակարգային բնույթը, եղել ու մնում է բանվոր դասակարգի կուսակցություն. նրա գլխավոր սոցիալական բազան բանվոր դասակարգն է: Կուսակցությունը մշտապես հոգում

է իր շարքերի որակական կազմի բարելավման ու կարգավորման մասին:

Ուսումնական ձեռնարկում հատուկ գլուխ է հատկացված կուսակցության կազմակերպական կառուցվածքի և գործունեության ղեկավար սկզբունքին՝ դեմոկրատական ցենտրալիզմին, ներկուսակցական հարաբերություններին: Այդ սկզբունքն օրգանապես միացնում է ցենտրալիզմն ու դեմոկրատիան, որոնք ներհատուկ են բանվոր դասակարգի հեղափոխական կուսակցությանը: Միայն ցենտրալիզմի և դեմոկրատիայի ճիշտ զուգակցումն է ապահովում կուսակցության բարձր մարտունակությունը, նրա կողմից մասսաների քաղաքական ղեկավարի ու կազմակերպչի դերի իրականացումը: ՍՄԿԿ-ն միասնական ամբողջություն է՝ կառուցված բարձր կազմակերպվածության, կենտրոնացված ղեկավարության հիման վրա, այն ուժեղ է իր անդամների բարձր գիտակցականությամբ ու ակտիվությամբ: Լիակատար դեմոկրատիա, կարծիքների ազատություն հարցերի քննարկման ժամանակ, երկաթյա կարգապահություն և գործողությունների միանություն ընդունված որոշումների իրականացման գործում՝ այսպիսին է կուսակցության կյանքի անխախտ օրենքը:

Որպես սկզբունք՝ դեմոկրատական ցենտրալիզմն անխախտ է ՍՄԿԿ-ի կյանքի բոլոր ժամանակներում, նրա գործունեության բոլոր փուլերում: Բայց նրա բովանդակությունը, կիրառման ձևերն ու շրջանակները համանման չեն բոլոր պարագաներում. կուսակցության զարգացման համեմատ, նայած խնդիրներին ու կոնկրետ իրադրությանը, դրանք կրում են էական փոփոխություններ: Գրքում շարադրվում են դեմոկրատական ցենտրալիզմի հիմնական նորմերը, որոնք գրառված են ՍՄԿԿ կանոնադրության մեջ: Դա բոլոր կուսակցական մարմինների և նրանց ղեկավարների ընտրովիությունն է, նրանց հաշվետու լինելը իրենց կազմակերպություններին, կուսակցական խիստ, բոլոր կոմունիստների համար միասնական կարգապահությունը, մեծամասնության կամքին ու որոշումներին ենթարկվելը, բարձրագույն մարմինների որոշումների պարտադիր լինելը ստորին մարմինների համար, ղեկավարման կոլեկտիվությունը, քննարկման և քննադատության ազատությունը:

Միասնական կուսակցական կարգապահությունը դեմոկրատական ցենտրալիզմի կարևորագույն նորմն է, որը պայմանավորված է կոմունիստների բարձր գիտակցականությամբ: ՍՄԿԿ-ում դեմոկրատիան և կարգապահությունը ոչ միայն չեն հակասում միմյանց, այլև կազմում են մի օրգանական ամբողջություն: Վ. Ի. Լենինը մատնանշում էր, որ կուսակցության մեջ կարող է լինել միայն մի կարգապահություն, որը հավասարապես պարտադիր է բոլորի՝ ինչպես նրա շարքային անդամների, այնպես էլ ղեկավարների համար:

Գրքում քննարկված են ՍՄԿԿ կազմակերպական կառուցվածքի, կուսակցության բարձրագույն և տեղական մարմինների, կուսակցական ապարատի կառուցվածքի և գործունեության հիմնական հարցերը: Առանձին գլուխ է հատկացված սկզբնական կուսկազմակերպությանը, կուսակցության մեջ նրա տեղին ու դերին: Եվ դա միանգամայն օրինաչափ է, քանի որ նա, հանդիսանալով կուսակցության հիմքը և աշխատանքային կոլեկտիվի ղեկավար միջուկը, գործում է այնտեղ, ուր տեղի է ունենում ստեղծագործական աշխատանքի անմիջական պրոցեսը և ձևավորվում է մարդը: Սկզբնական կազմակերպությունն է անմիջականորեն կուսակցությանը կապում մասսաների հետ:

Կուսակցության գործունեության մեջ գլխավորը հասարակության զարգացման հեռանկարի, քաղաքական գծի մշակումն է, դրանց կենսագործման համար աշխատավորների կազմակերպումը: Այդ գործունեության հաջողությունը մեծապես պայմանավորված է կադրերի ճիշտ ընտրությամբ, տեղաբաշխմամբ և դաստիարակությամբ, կուսակցության քաղաքականության և որոշումների կատարման նըկատմամբ համապարփակ և մշտապես գործող վերահսկողության ճիշտ կազմակերպմամբ: Կադրերի հետ տարվող աշխատանքը կուսակցական ղեկավարման վճռական օղակն է: Գրքում պարզաբանվում է կուսակցության կադրային քաղաքականության, կադրերի ընտրության ու տեղաբաշխման սկզբունքները, նրանց պատրաստման ու դաստիարակության, կուսակցության և կառավարության որոշումների կատարման ստուգման կուսակցական վերահսկողության ձևերը: Լավ կազմակերպված կատարման ստուգումը սուր և գործուն զենք է անկարգապահության, բյուրոկրատիզմի, քաշքշուկի, հասարակական կյանքի սոցիալիստական սկզբունքների ու նորմերի բոլոր տեսակի խախտումների դեմ մղվող պայքարում, նպաստում է աշխատողների ճիշտ դաստիարակմանը, բարձրացնում նրանց պատասխանատվությունը հանձնարարված գործի նըկատմամբ:

Կուսակցական ղեկավարման գլխավոր մեթոդը համոզումն է, գաղափարական ներգործությունը: Գրախոսվող ձեռնարկում հիմնական գծերով պարզաբանված են կուսակցության գաղափարախոսական աշխատանքի հար-



ցերը, որոնք ներառում են հեղափոխական տեսության հետագա ստեղծագործական զարգացումը, պրոպագանդիստական և մասսայական-քաղաքական աշխատանքը կոմունիստների և աշխատավորների շրջանում, ժողովրդական կրթության, կուլտուր-լուսավորական հիմնարկությունների, մասսայական ինֆորմացիայի միջոցների, գրականության և արվեստի կուսակցական ղեկավարումը: Կուսակցության գաղափարախոսական-քաղաքական աշխատանքում գլխավորը եղել ու մնում են սովետական մարդկանց մեջ կոմունիստական աշխարհայացքի ձևավորումը, մարքսիզմ-լենինիզմի գաղափարներով նրանց դաստիարակումը, անհաշտ հարձակողական պայքարը բուրժուական և ռևիզիոնիստական գաղափարախոսությունների դեմ: Ընթերցողը ծանոթանում է գաղափարախոսական աշխատանքի լենինյան հիմնարար սկզբունքներին (կուսակցականություն, գիտականություն, անխզելի կապը կյանքի, պրակտիկայի հետ) ու դրանց պրակտիկ կիրառմանը, գաղափարախոսական աշխատանքի հիմնական ուղղությունների հետ, կոմունիստների մարքս-լենինյան կրթության և մասսաների շրջանում տարվող գաղափարադաստիարակչական աշխատանքի կազմակերպման, դրանց ձևերի ու մեթոդների հետ: Հատուկ ուշադրություն է հատկացված կոմունիստական շինարարության արդի փուլում գաղափարախոսական աշխատանքի դերի, ժողովրդական մասսաների գիտակցականության բարձրացման հարցերին:

Ժողովրդական տնտեսությունը կոմունիստական շինարարության գլխավոր տեղամասն է: Ահա թե ինչու պահանջվում է մշտապես և ըստ ամենայնի բարձրացնել տնտեսության կուսակցական ղեկավարման մակարդակը: «Տնտեսական շինարարության կուսակցական ղեկավարումը» գլխում լուսաբանվում են ղեկավարման հիմնական սկզբունքները, այն է՝ ժողովրդի արմատական շահերին համապատասխանող տնտեսական ստրատեգիայի և տնտեսական քաղաքականության գիտական մշակումն ու կենսագործումը, տնտեսական մարմինների և ձեռնարկությունների ադմինիստրացիաների գործունեության նկատմամբ կուսակցական վերահսկողությունը, տնտեսական կադրերի ընտրությունն ու դաստիարակությունը, մասսաների աշխատանքային ակտիվության և ստեղծագործական նախաձեռնության զարգացումը: ՍՄԿԿ տնտեսական ստրատեգիան և քաղաքականությունը ծառայում են սովետական մարդկանց նյութական և հոգևոր պահանջմունքների առավել լրիվ բավարարմանը, նրանց բարեկեցության անշեղ բարձրացմանը:

Էկոնոմիկայի կուսակցական ղեկավարման կարևորագույն սկզբունքը քաղաքական և տնտեսական աշխատանքի միասնությունն է: Խոսելով տնտեսության կուսակցական ղեկավարման մասին, գրքում նշվում է, որ կուսակցական կազմակերպություններն ու նրանց ղեկավար մարմինները անմիջականորեն չեն կառավարում էկոնոմիկան, այլ ուղղություն են տալիս նրա զարգացմանը: ՍՄԿԿ-ն իր տընտեսական քաղաքականությունը իրականացնում է պետական ու տնտեսական մարմիններում, ձեռնարկություններում աշխատող կոմունիստների, սկզբնական կուսկազմակերպությունների միջոցով: Լենինը բազմիցս նախազգուշացրել է կուսակցական կոմիտեների կողմից սովետական ու տնտեսական մարմիններին փոխարինելու, նրանց դիմազրկելու վտանգի մասին: Դա բնավ չի նշանակում կուսակցական մարմինների ինքնամեկուսացում տընտեսական շինարարության ղեկավարումից, այլ, ընդհակառակը, այն ենթադրում է տնտեսության կուսակցական ղեկավարման ուժեղացում, պետական և տնտեսական մարմինների նախաձեռնության զարգացում և նրանց դերի բարձրացում:

Գրքի բազմաթիվ էջեր հատկացված են սովետների և աշխատավորների հասարակական կազմակերպությունների կուսակցական ղեկավարման հարցերին: ՍՄԿԿ-ն, որը Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո է դարձել կառավարող կուսակցություն, իր քաղաքականությունն իրականացնում և հասարակության զարգացման վրա ներգործում է իր կազմակերպությունների ու ղեկավար մարմինների, ինչպես նաև պետական ու աշխատավորների հասարակական կազմակերպությունների (սովետների, արհմիությունների, կոմերիտմիության, կոոպերացիայի և այլն) միջոցով: Մեր կուսակցության ուժը ժողովրդի հետ ունեցած սերտ կապի մեջ է, և իր գործունեության ընթացքում նա հենվում է աշխատավորական մասսաների, նրանց կազմակերպությունների վրա:

Հանդիսանալով սովետական հասարակության քաղաքական սիստեմի միջուկը՝ ՍՄԿԿ-ն միավորում է հասարակական կազմակերպությունների ջանքերը և այն ուղղում միասնական նպատակի: Վերոհիշյալ գլխում պարզաբանված են պետական և հասարակական կազմակերպությունների դերը հասարակության քաղաքական սիստեմում:

Գրքի եզրափակիչ գլուխը նվիրված է կուսակցական տնտեսության, կուսակցական կոմիտեներում և սկզբնական կազմակերպություններում գործավարության կազմակերպման հարցերին:

Ուսումնական ձեռնարկը տեսական ու գործնական հարուստ նյութ է պարունակում կուսակցական շինարարության, աշխատանքի լենինյան ստեղծագործական ոճի մասին: Դա օգնում է ղեկավար կադրերին՝ խորապես վերլուծելու իրենց գործունեությունը, տեսական դրույթները ստեղծագործաբար օգտագործելու պրակտիկ աշխատանքում, ավելի ու ավելի կատարելագործելու կուսակցական աշխատանքը, հարստացնելու նրա բովանդակությունը, ղեկավարման ձևերն ու մեթոդները:

Կուսակցական շինարարություն ձեռնարկը հայերեն երկրորդ հրատարակությունն է, որը նախկինի համեմատ լրացված ու բարեփոխված է: Ցավոք, նկատելի են վրիպումներ ու բացթողումներ, որոնք թարգմանիչ Ս. Ստեփանյանի և խմբագիր Ա. Սարգսյանի անուշադրության հետևանք են:

**Վ. Հ. ՍԱՐԳՍՅԱՆ**




Адрес редакции: 375033. Ереван-33 ул. Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ **375033, Երևան—33, Բարեկամության 59 գ:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*Հանձնված է շարվածքի՝ 24.1.81—31.1.81: Ստորագրված է տպագրության 12.2.81: ՎՖ 03535: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրություն՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 16.132: Պատվեր 104*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ավ. Իսահակյանի փող. № 28:*

Типография издательства ЦК КП Армении. 375009, Ереван-9, ул. Исаакяна 28.


## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Վ. ԲԵԼԻՆՍԿԻ, Ն. ՉԵՐՆԻՇԵՎՍԿԻ, Ն. ԴՈԲՐՈԼՅՈՒԲՈՎ— Ընտիր երկեր: *ՌԴԳ: Ե., «Սովետական գրող» հրատ., 1980:*

Մ. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ— Երկերի լիակատար ժողովածու: *Հ. 2: Ե., ԳԱ հրատ., 1980:*

Սոցիալիզմը և մարդու իրավունքը. *Հեղինակային կոլեկտիվ: Ե., ԳԱ հրատ., 1980:*

Հայաստանի կոմունիստական կուսակցության պատմության համառոտ ժամանակագրություն: *«Հայաստան» հրատ., 1981:*

Գ. ԳԱԼՈՅԱՆ— Հերոսական մայիսից՝ հաղթական նոյեմբեր: *«Հայաստան» հրատ., 1980:*

Հ. ԱՎԵՏԻՍՅԱՆ— Մայիսյան ապստամբությունը Կոմինտերնի նյութերում: *«Հայաստան» հրատ., 1981:*

Հ. ՍԻՄՈՆՅԱՆ— Արդի բուրժուական գաղափարախոսության քննադատական ուրվագծեր: *«Հայաստան» հրատ., 1980:*

Մ. ԳՐԻԳՈՐՅԱՆ— Բուրժուական փաղափառնտեսության նորագույն ուղղությունների քննադատությունը: *Ե., «Գիտելիք» հրատ., 1980:*

Լ. ՔԱԼԱՇՅԱՆ— Իրավունքի ու բարոյականության տեսության և պատմության հարցեր: *«Հայաստան» հրատ., 1980:*

ՀՐ. ԹԱՄՐԱԶՅԱՆ— Սովետահայ գրականության պատմություն: *ԵՊՀ հրատ., 1980:*

Վ. ԹԱԴԵՎՈՍՅԱՆ— Արհմիությունները աշխատավորության առողջության և հանգստի գործի կազմակերպիչ: *«Հայաստան» հրատ., 1980:*

Մ. ԶՈԲԱՆՅԱՆ— Քաղաքային և գյուղական բնակչության կենսամակարդակի մերձեցումը զարգացած սոցիալիզմի պայմաններում: *«Հայաստան» հրատ., 1980:*

Հ. ՊՈՂՈՍՅԱՆ— Սովետական Հայաստանի բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությունը 60 տարում: *Ե., «Գիտելիք» հրատ., 1980:*

Շ. ՄԿՐՏՉՅԱՆ— Լեռնային Ղարաբաղի պատմաճարտարապետական հուշարձանները: *«Հայաստան» հրատ., 1980:*

**В. И. Ленин, КПСС о контроле и проверке исполнения.** В двух томах. Т. I. М., Политиздат, 1980.

Э. ИЛЬЕНКОВ — **Ленинская диалектика и метафизика позитивизма.** Размышления над книгой В. И. Ленина «Материализм и эмпириокритицизм». М., Политиздат, 1980.

Е. ЗАЗЕРСКИЙ, А. ЛЮБАРСКИЙ — **С нами будут миллионы.** М., Политиздат, 1980.

А. АНДРЕЕВ — **Место искусства в познании мира.** М., Политиздат, 1980.

И. КОН — **Дружба.** Этико-психологический очерк. М., Политиздат, 1980.

А. МЕЛЬВИЛЬ — **Социальная философия современного американского консерватизма.** М., Политиздат, 1980.

Р. АЛЕКСЕЕВ — **СССР—ФРГ: прошлое и настоящее. Советско-западногерманские отношения 1955—1980 гг.** М., Политиздат, 1980.

ЛУИЗА ДОРНЕМАНН — **Заседание рейхстага объявляю открытым.** Жизнь и деятельность Клары Цеткин. Пер. с нем. Изд. 2. М., Политиздат, 1980.

В. ПЕТРОВСКИЙ — **В интересах народов всего мира. Борьба СССР на международных конференциях и переговорах за мир, безопасность и предотвращение войны.** М., Политиздат. 1980.

Н. ГНЕЦ, М. ТЕСЕМНИЦИНА, В. ШИШМАРЕНКОВ—**Проблемное обучение в системе марксистско-ленинского образования.** М., Политиздат, 1980.

В. ЕВСЕЕВ — **Партийное воздействие прессы.** Вопросы истории и методологии печати как средства идейного и организационного укрепления КПСС. М., Политиздат, 1980.

Գինը՝ 20 կ.
Индекс 77783

ISSN 0130—8114

# Գիտության և տեխնիկայի նորություններ

## ՍԱՌԵՑՄԱՆ ՕԳՆՈՒԹՅԱՄԲ

*Մարդիկ, որոնք աշխատում են թթվածնից զուրկ միջավայրում— տիեզերական տարածություններում, հրդեհի ծխի մեջ, ջրի տակ, օգտվում են կյանքի ապահովման հատուկ սիստեմներից։ Ամենից առաջ նրանց անհրաժեշտ է օդի մեծ պաշար։ Մինչդեռ սովորական սուզալողորդների բալոններում գազի խտացված խառնուրդը բավարարում է ընդամենը 30—40 րոպե։ Նոր հնարավորություններ է բացում շնչելու համար օգտագործվող հեղուկ խառնուրդը։ Հեղուկացված օդը 750 անգամ փոքր ծավալ է զբաղեցնում։*

*Օդեսայի տեխնոլոգիական ինստիտուտի գիտնականներն ստեղծել են ապարատ, որը նախատեսված է մեկուկես, երկու ժամ գործելու համար։ Մասնագետները գտնում են, որ դա դեռ վերջնական սահմանը չէ։ Ինքնավար կրիոգենային ապարատը կապահովի մարդու մեկօրյա և ավելի նորմալ գործունեությունը։*

*Նույն ինստիտուտում մշակված մի նորույթ ևս կհետաքրքրի տրանսպորտայիններին։ Դա, այսպես կոչված, մրրկային սառնարանն է, որն օգտագործում է պտտվող գազի բաժանման հետևանքով առաջացած տաք և սառը հոսանքները։ Ագրեգատի համար վտանգավոր չեն վիբրացիան, թեքումները, բարձր ջերմաստիճանը. այն հաջողությամբ բանում է բեռնատարի խցիկում, մարդատար ինքնաթիռներում, ջերմատարներում։ **Խտացրած** օդով գործող նոր սառնարանը չունի ջերմափոխանակման բարդ սարք, քսվող և արագ մաշվող մասեր։*

## ՉԻ ՀԱՆԳՉՈՒՄ

*Նույնիսկ ուժգին քամին անզոր է հանգցնելու Տոմսկի «Սիբիր» ֆաբրիկայի ստեղծած լուցկին։ Այն կարելի է սուզել ջրով լի բաժակի մեջ, և բոցը մի փոքր կխամրի միայն, սակայն օդում կբոցավառվի նոր ուժով։*

*«Չհանգչող» լուցկիները կարող են օգտագործել երկրաբանները, շինարարները, նավթագործները, բոլոր նրանք, ովքեր աշխատում են դրսում, տարվա բոլոր եղանակներին, երկրի ճահճոտ, խոնավ վայրերում։*

## ՊՈԼԻԳՐԱՖԻՍՏ ԿՈՄՊՅՈՒՏԵՐ

*ԳԴՀ-ի պոլիգրաֆարդյունաբերության արտադրանքն արտահանվում է աշխարհի տասնյակ երկրներ։ Դրանց մեծ մասն արդեն արժանացել է պատվո մեդալների։ **1980 թ.** «Պլանետավարիկոնտրոլ» բազմագույն տպագրության մեքենան արժանացել է ոսկե մեդալի։ Նման մեխանիզմն առաջինն է, որ ունի թվածրագրային կառավարման (ԹԾԿ) նեղ մասնագիտացված սիստեմ։ Միկրոպրոցեսորի հիման վրա գործող էլեկտրոնային բլոկը հետևում է արագության ճշգրտությանը և գույների ինտենսիվ մատուցմանը, թղթի վրա գլանի ճնշմանը։ Որակը պայմանավորող բոլոր պարամետրերը կայուն են նույնիսկ մեծ տպաքանակների դեպքում։ Գունային պատշաճ գամայի պահպանման համար նախատեսված է խտաչափ։*

*ԹԾԿ-ի խնդիրն է սկզբից ևեթ բացառել խոտանը և դրանով իսկ տնտեսել թուղթն ու ներկը։ Արվում է էտալոնային դրոշմ, և դրա գունային բոլոր հատկանիշներն այնուհետև պահպանվում են էլեկտրոնիկայի հսկողությամբ։ Այսպիսով, կարգավորումն այստեղ լիովին ավտոմատացված է և հարկ չկա տպագրելու մեծ քանակությամբ նմուշներ։*

## ՄԱՏՆԵՐԸ ԿԱՐՈՂ ԵՆ ՀԱՆԳՍՏԱՆԱԼ

*Հայտնի է, թե որքան են հոգնում մեքենագրուհու ձեռքերը, երբ նա մեքենագրում է մեծ տեքստեր։*

*«Ռոբոտրոն» ֆիրման (ԳԴՀ) յուրացրել է էլեկտրոնային նոր, չափազանց հեշտ բանող գրամեքենաների արտադրությունը։ Մեքենան կառավարվում է փոքրաչափ պրոցեսորով։ Տեքստը մտցվում է էլեկտրոնային հիշողության մեջ, անհրաժեշտության դեպքում այն կարելի է վերարտադրել մի քանի անգամ։ Արագությունը վայրկյանում 40 նիշ է։ Նույնիսկ ամենափորձառու մեքենագրուհին կարող է միայն երազել նման արագության մասին։ Տառերը «դրոշմվում են» գլանիկի վրա, որը, մակույկի նման, «վազում է» ձախից աջ՝ անշարժ տեղադրված գլանի երկարությամբ։ Հատուկ սարքն ամեն անգամ գլանիկն անհրաժեշտ տառով շրջում է դեպի թուղթը, մինչև տողի լրանալը։*